**ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ**

# ԱՅՍ ՆՈՐ ՏԱՐՈՒՄ

Երբ ասում ենք՝
ծաղիկ կամ ջուր,
հասկանալի բան է, պարզ է,
        տեսնում ենք մենք,
անգամ կարող ենք շոշափել,
բայց երբ ասենք՝
        նոր ժամանակ կամ նոր տարի,
ո՛չ տեսնվող բան է
            ո՛չ էլ շոշափելի...
Միայն գիտենք, որ կատարվեց
մի հիմնավոր փոփոխություն...

Ժամանակի մի քայլն է նա:
Քանի՞ քայլ ենք արդեն անցել,
յո՞թ, տասնրհինգ կամ երեսո՞ւն,
ուրեմն ահա այդքան տարով մենք մեծացել
ու դարձել ենք քաջ տղեկներ կամ այր
                                                hասուն:
Դե, ուրեմն գոտևորվենք,
արդարության մաքուր հացով
և մեր կյանքի տարիների խաչմերուկում,
        այս տարվանից,
ընտրենք ճամփան այն,
        որ մի նեղ արահետ է,
սակայն ունի քաղցր անուն,
        անուշ բեռներ
և քայլելիս լայնանում է հետզհետե...

Եվ դեն նետենք
ամեն տեսակ փուշ ու տատասկ
        մեր սրտերից՝
նախանձ ու քեն,
սուտ խոսք և կամ այլ արատներ...
Թող օդ լինի բարությունը
        այս նոր տարում,
        շնորհն՝ անձրև,
        սերն՝ արեգակ
        և ծաղկի պես
բացվեն բոլոր սրտերը փակ...
Թող օդ լինի բարությունը
        այս նոր տարում,
արդարության բազուկն ամուր
        ու անխորտակ...

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

**№ 1 ● 1984**

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկի առաջին էջը՝
ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

# ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿԻ ՀԵՏ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Այս տարվա հունվարի 26-ին լրանում է Պարույր Սևակի ծննդյան 60-ամյակը:

Բանաստեղծ Վարդգես Բաբայանը Պարույր Սևակի համակուրսեցին է եղել Մոսկվայի Մ. Գորկու անվան գրականության ինստիտուտում սովորելու տարիներին և թե՛ ուսանելուց առաջ, թե՛ հետո, երկարամյա շփման մեջ է եղել նրա հետ:

Տպագրում ենք Վ. Բաբայանի հուշերը Պարույր Սևակի մասին, որտեղ մեր ամսագրի ընթերցողները ուսանելի շատ բան կգտնեն իրենց համար, նաև կտեսնեն Պարույր Սևակին՝ իր մարդկային նոր, հետաքրքիր կողմերով:

Մոտիկ ու հարազատ մարդու, և այն էլ Պարույրի նման մարդու, կորստից հետո, նրան վերաբերող աննշան թվացող ամեն մի «մանրուք» մի նոր երանգ է ավելացնում նրա կենսագրությանը, որը նաև յուրաքանչյուրիս կենսագրությունն է: Ինչ-որ չափով մենք բոլորս լրացնում, մտնում ենք մեկս մյուսի կենսագրության մեջ, մեզ համար աննկատելի ամբողջանում մի հավաքական «ես»-ի մեջ: Առանց մեկի մյուսը թերի է: Իսկ երբ մեզանից մեկը հեռանում է կյանքից, թվում է, թե մեր էության մի կարևոր մասը, դեռ մեր կենդանության ժամանակ, թաղվում է հողի տակ...

Հենց այդպիսի մոտիկ ու հարազատ էր ինձ համար Պարույր Սևակը, որի հետ ես կապված էի ավելի քան քսանամյա բարեկամությամբ: Նրա ընկերներից ամեն մեկը, իսկ նրանց թիվը շատ-շատ է, իրավամբ իրեն համարում է նրա ամենամոտիկը: Դա գալիս է Պարույր Սևակի խառնվածքից: Բարեկամության մեջ «միջին» գիծ չկար նրա համար: Իսկ նրա բարեկամությունը փնտրում էին բոլորը:

Ինչպես իր ստեղծագործության մեջ, այն-



պես էլ անձնական կյանքում նա բուռն էր ու հախուռն, զգացմունքներով ու մտքերով հարուստ ու թարմ, անկեղծ ու անմիջական: Նա ամեն ինչի մեջ կիրք էր դնում, կրակուն էր ու փոթորկոտ: Անհնար էր Պարույրին ճանաչել և անտարբեր մնալ նրա հանդեպ: Նրա մեջ ինչ-որ կախարդող բան կար, որ անմիջապես կապում էր դիմացինին: Անդիմադրելի հմայք ուներ: Երևի, բացառիկ են այն մարդիկ, որոնց կյանքը և գործը այնքան ներդաշնակ լինեն, որքան Պարույրինը: Նա իր ներկայությամբ ազնվություն և մտերմություն էր պարտադրում շրջապատին: Մենք համարյա հասակակիցներ էինք,— իսկ հիմա, ավա՜ղ, ես նրանից տասներկու տարով մեծ եմ,— սակայն հաճախ ինձ թվում էր, թե նա Գողթան երգիչների հետ միասին թափառել է գավառից գավառ և, փանդիռը կրծքին, վիպերգել Վահագնի ծնունդը և բազմաթիվ հայրեններ: Ինձ թվում էր, թե նա Վռամշապուհի հետ միասին դիմավորել է Հունաստանից նոր վերադարձած Մեսրոպ Մաշտոցին և հետո միայն երգել «Խոսք հավատիքի» և «Եվ այր մի Մաշտոց անուն»... Նարեկա վանքում մոմի պլպլան լույսի տակ, գիշերն ի լույս, զրուցել է Նարեկացու հետ, դրա համար էլ այնպես լավ էր հասկանում և ուզում էր անպայման նորից ու նորովի թարգմանել Նարեկը իր ժողովրդի համար...



Մինչև Մոսկվա գնալը մենք ծանոթ էինք: Երբեմն հանդիպում էինք, խոսում, բայց առանձին մտերմություն չկար:

— Վեդին և Արտաշատը սահմանակից «պետություններ» են,— ասում էր,— մենք պետք է բարի դրացիական հարաբերություններ պահպանենք իրար հետ:

Հետո այնպես եղավ, որ այս երկու շրջանները միացվեցին: Եվ վարչական կենտրոնը Արտաշատն էր: Մի օր հանդիպեցինք Երևանում:

— Էս ի՞նչ ագրեսիվ «պետություն» դուրս եկաք... Երկուսս էլ հիմա չեզոք գոտում ենք, ո՞նց ես հիմա ես էլ քո դեմ ագրեսիա գործեմ:

Եվ ամուր գրկեց ու համբուրեց ինձ՝ «ագրեսիա գործեց»:

Կարծեմ, արդեն Մոսկվայում սովորում էինք, Վեդին նորից առանձին շրջան դարձավ: Չէր մոռացել մեր «ագրեսիան»:

— Հը՜, ձեր գաղութային ճնշումից ազատվեցի՞նք:

Մեր ինստիտուտը տեղավորված էր ռուս մեծ մտածող, գրող և հեղափոխական Գերցենի տանը: Տվերսկոյ բուլվարի կողքին: Պարույրը մի առանձին հաճույք էր ստանում, որ այս նույն միջանցքով երբևէ քայլել է Գերցենը: Գուցե և այդ նույն սենյակում, որն այժմ մեր լսարանն է, Գերցենը նստել է, երազել: Երբեմն նստում էինք ինստիտուտի բակում կանգնած դարավոր թխկիների տակ դրված նստարաններին և երևակայում, որ այդ նույն նստարանների վրա մի օր Գերցենն է նստել, չնայած երկուսս էլ գիտեինք, որ այդ փայտյա, խարխուլ նստարանները նույնիսկ հեղափոխությունը չեն տեսել: Ընդամենը մի քանի օրվա ուսանողներ էինք: Դասախոսություններից հետո նստած էինք «Գերցենի նստարանին», իսկ վերևից օրորվելով մեր գլխին էին կաթկթում դեղնած տերևները: Աշունն այդ ձևով էինք զգում՝ դեղնած տերևներ և քամի...

— Իսկ մեզ մոտ հիմա ի՞նչ են անում,— երազկոտ ասաց Պարույրը,— խաղողի հասած ճթերը տոռուզ-տոռուզ կախվել են, մի կողմից աղջիկները լցնում են զամբյուղներն ու կողովները, մյուս կողմից ավտոները կրում են... Այնտեղ տանձ ու խնձոր է թափվում ծառերից, իսկ այստեղ՝ թխկենու տերևներ...

Ֆիզիկապես հեռացել էինք, բայց հոգով, մտքով մեր հողից չէինք կտրվել: Կտրվելը երբեք չկտրվեցինք, ավելի ճիշտ՝ չէինք ընտելացել մեր նոր վիճակին: Նոր էինք եկել, բայց արդեն սկսել էինք կարոտել:

— Դու Երևանում ավարտել ես համալսարանը, ասպիրանտուրան, ի՞նչ ես սովորելու այստեղ,— հարցրի ես:

Պարույրն զբաղված էր թխկենու տերևը զննելով: Ինձ թվաց, նա իմ հարցը չլսեց, հետո ցույց տալով տերևը, ասաց.

— Տես է՜, ի՞նչ շատ երակներ ունի, մեր խաղողի տերևն ուրիշ է... Նա սրտաձև է, իսկ սա ինչի՞ է նման:— Եվ ափի մեջ ճմրթեց ու նետեց:— Ա՜յ հենց այստեղ, մեր կողքին Պուշկինի թատրոնն է, քիչ ներքև՝ սատիրայի թատրոնը: Քանի՞ թատրոն կա Մոսկվայում, գիտե՞ս... Իսկ համերգասրահները, գրադարանները, թանգարաններն ու հրապարակները, գրական երեկոները... Դրանցից ամեն մեկը մի ինստիտուտ է: Դրանցից բացի, կա ռուս ժողովուրդ և ռուսաց լեզու, որը պետք է մարդավարի սովորել: Այդ բոլորը միասին կոչվում է Մոսկվա: Պետք է Մոսկվան սովորենք, ջա՜նս, թե չէ միայն Գերցենի տունը նեղ է... Հիմա հասկացա՞ր, թե ինչու եմ եկել:

Եվ Պարույրը ագահորեն կլանում էր Մոսկ-

վան: Հենց առաջին իսկ տարում նա հասցրեց դիտել Մեծ թատրոնի ու Փոքր թատրոնի ամբողջ խաղացանկը: Նրան հաճախ կարելի էր տեսնել Միությունների տան սյունազարդ դահլիճում, Չայկովսկու անվան համերգասրահում, Գրողների կենտրոնական տանը... Նրա համար գրական և ոչ գրական հարցեր չկային: Տրետյակովյան պատկերասրահը նրա համար նույնքան գրական էր, որքան և Գորկու տուն-թանգարանը: Կարդում էր մետրոյում, էլեկտրագնացքում, ավտոբուսի կանգառում, ամենուրեք: Հարյուրավոր մարդկանց մեղվաբվվոցի մեջ: Ըստ որում, նա մի հեղինակի հետ «հաշիվը փակում էր» կամ գոնե հիմնական ստեղծագործությունները կարդում, հետո միայն անցնում մյուսին: Շրջապատից կտրվելու մեծ հատկություն ուներ: «Ուզած ժամանակ անջատվում եմ,— ասում էր նա,— հարսանքատանն էլ կարող եմ բանաստեղծություն գրել»: Երաժշտական, թատերական, գրական և արվեստի ամենաբազմազան հարցերի մասին իր խոր ու հիմնավոր գիտելիքներով զարմացնում էր բոլորին, առանց դրա հավակնությունն ունենալու:

Պարույրին հանձնարարվեց ռեֆերատ պատրաստել՝ «Գորկին և ժողովրդական բանահյուսությունը»: Մի շաբաթ ժամանակ տրամադրվեց: Շատ քիչ էր: Բայց այդ մի շաբաթում նա տակնուվրա էր արել Գորկու ամբողջ ստեղծագործությունը և մի այնպիսի զեկուցում պատրաստեց, որ և՛ դասախոսը, և՛ ուսանողները այն գնահատեցին որպես թեկնածուական դիսերտացիա: Պետք է ավելացնեմ նաև, որ այդ շաբաթվա ընթացքում նա ոչ մի դասախոսություն բաց չթողեց ինստիտուտում: Հասկանալի է, որ նա Գորկուն մարսել էր դեռ Երևանում:

Գիրք ընթերցելը նրա համար «պարապ վախտի խաղալիք» չէր, այլ լուրջ զբաղմունք, աշխատանք: Բայց ամեն բան չէ, որ կարդում էր: Նա ժամանակի գինը լավ գիտեր:

Ինստիտուտում հանդիպում կազմակերպվեց ղազախ անվանի գրող, ակադեմիկոս Մուխթար Աուեզովի հետ: Որոշվեց հանդիպումն անցկացնել զրույցի ձևով, առանց պաշտոնական ճառերի: Բայց զրուցելու համար նախ պետք էր Աուեզովի ստեղծագործությանը ծանոթ լինել: Պարզվեց, որ նրա հանրահայտ վեպը՝ «Աբայը», որ դեռևս 1949 թ. պետական մրցանակ էր ստացել, ոչ ոք չէր կարդացել, ոչ էլ նույնիսկ հանդիպման կազմակերպիչները: Ավելի ճիշտ՝ միակ կարդացողը Պարույրն էր: Շատ անհարմար վիճակ ստեղծվեց: Ձախողման վտանգը շոշափելի էր: Պարզապես զրույցը չէր ստացվի: Մեկ էլ Պարույրը աշակերտի պես ձեռքը տնկեց, թե՝ կարելի՞ է: Եվ մի հարց տվեց: Հետո չիմացանք, թե ինչպես հարց ու պատասխանը վերածվեց մի շատ հետաքրքիր երկխոսության, որը տևեց մեկ ժամից ավելի: Պարզվեց, որ Պարույրը հիանալի գիտեր ոչ միայն վեպը, այլև Աբայ Կունանբաևի ամբողջ ստեղծագործությունը, ղազախ ժողովրդի պատմական անցյալը և այսօրը... Հիշում եմ, Պարույրը մի քանի նուրբ դիտողություններ արեց վեպի առանձին հերոսների և հատկապես ծավալի մասին: Աուեզովը խոստացավ վերահրատարակելիս անպայման հաշվի առնել այդ դիտողությունները: Հետո անսպասելի հարցրեց.

— Իսկ դուք եղե՞լ եք Ղազախստանում:

— Բախտ չեմ ունեցել,— պատասխանեց Պարույրը:

— Բայց դուք այնպես էիք խոսում մեր յուրտերի ու տափաստանների մասին, որ ինձ թվաց...

Պարույրը ընդհատեց նրան.

— Դրա համար ես ձեզ եմ պարտական...

Աուեզովը ակնհայտորեն շոյված էր: Նրա կողքին նստած էր իր դուստրը, որը սիրահարվածի հայացքով անվերջ նայում էր Պարույրին: Հայր ու աղջիկ ղազախերեն ինչ-որ բառեր փոխանակեցին:

— Տեսնո՞ւմ եք,— ասաց Աուեզովը,— աղջիկս շատ խելացի առաջարկ է անում: Մենք ձեզ հրավիրում ենք Ղազախստան, եկեք հյուր եղեք, չեք փոշմանի:

Բոլորս ծափահարեցինք: Պարույրը շնորհակալություն հայտնեց հրավերի համար և խոստացավ, որ հենց հարմար առիթը ներկայանա, անպայման կայցելի «Աբայի հայրենիքը»: Եվ իրոք, հայ գրականության տասնօրյակի օրերին, նա եղավ Ղազախստանում, բայց, ավաղ, Մուխթար Աուեզովը արդեն մահացել էր: Իսկ 1971 թվականի մայիսի 28-ին, հայ գրողների պատվիրակության կազմում ես մասնակցեցի Աբայի ծննդյան 125-ամյակի հանդիսությանը: Ալմա-Աթայում հանդիսավոր ժողովում ելույթ ունեցա և, իհարկե, հիշեցի Մուխթար Աուեզովին, որը կերտել էր Աբայի գեղարվեստական հոյակապ կերպարը: Ընդմիջմանն ինձ մոտեցավ միջին տարիքի մի կին.

— Թույլ տվեք շնորհակալություն հայտնել ձեզ,— և մեկնեց ձեռքը:

Ես ձեռքը սեղմեցի, բայց չհասկացա, թե ինչի համար է շնորհակալ:

— Հորս հիշելու համար...

— Հա՛, դուք Մուխթար Աուեզովի դո՞ւստրն եք... Մենք հին ծանոթներ ենք...

— Մի՞թե,— այս անգամ զարմացավ նա,— ես ձեզ առաջին անգամ չե՞մ տեսնում:

— Ո՛չ, երկրորդ... Հիշո՞ւմ եք՝ Գորկու անվան ինստիտուտում հանդիպումը ձեր հոր հետ...

Նա շատ ուրախացավ, որ ես ներկա եմ եղել այդ նշանավոր հանդիպմանը և, իհարկե, անմիջապես հիշեցինք Պարույրին:

— Հայրս հիացել էր նրանով: Հաճախ էր հիշում: Ի՞նչ զարմանալի հայ է,— ասում էր,— ղազախներից ավելի լավ գիտեր ղազախներին...

Եվ խնդրեց ջերմ բարևներ հաղորդել Պարույրին: Ի՞նչ իմանայինք, որ դրանից ընդամենը քսան օր հետո վրա է հասնելու ճակատագրական պահը...

***

Պրոֆ. Ասմուսը՝ հարուստ գիտելիքների տեր և հմայիչ մի մարդ, Գորկու անվան ինստիտուտում էսթետիկա էր դասախոսում մեզ: Այն դասախոսներից էր, որի դասախոսությունների անխտիր ներկայանում էին բոլոր ուսանողները:

Դասախոսության թեման գեղեցիկի բարոյական ու փիլիսոփայական չափանիշներն էին: Խոսում էր, ինչպես միշտ, հանգիստ, համոզիչ, ասածները հիմնավորում Չերնիշևսկուց, Հեգելից արած մեջբերումներով: Դասախոսության ընթացքում հարց տվեց՝ այսպես ուրեմն, ի՞նչ բան է գեղեցկությունը, ո՞վ կարող է կոչվել գեղեցիկ...

— Պարույր Սևակը...— հանկարծ պոռթկաց մեկը:

Նույնքան անսպասելի պոռթկաց ծիծաղը: Ծիծաղեցինք բոլորս, մեզ հետ էլ ինքը՝ Պարույրը: Իսկ լեհուհին, որ ինքնաբերաբար



**Պ. Սևակը և Վ. Բաբայանը՝ Մոսկվայում**

պատասխանել էր հարցին, չէր ուզում կանգ առնել:

— Ո՛չ, ո՛չ, Վալերի Ֆերդինանդովիչ, թույլ տվեք,— ոտքի կանգնեց մեր լեռ դասընկերուհին: Եվ թույլտվություն ստանալով պրոֆեսորից, «գեղեցիկի բարոյական ու փիլիսոփայական բոլոր չափանիշներով» նա ապացուցեց, թե ինչու է Պարույր Սևակը գեղեցիկ...

— Ամեն անգամ, երբ լսում եմ Պարույրի խորիմաստ ու սրամիտ խոսքը, կարդում եմ նրա բանաստեղծությունները, տեսնում նրա կիրթ ու վայելուչ շարժումները, մոռանում եմ նրա հաստ շրթունքները, փլված քիթը և նախանձով մտածում եմ՝ աստված իմ, ինչ գեղեցիկ մարդ է Պարույր Սևակը, երանի ես էլ նրա նման լինեի...

Երևի, դեռ երկարեր մեր լեռ դասընկերուհու խոսքը, եթե չհնչեր ընդմիջման զանգը:



Առիթը չեմ հիշում, բայց բոլորս շատ ուրախ էինք տրամադրված: Դասախոսություններից նոր էինք դուրս եկել: Պարույրն էր, Վահագն Կարենցը, Դերենիկ Սարիբեկյանը, Միքայել Ռաշիդը, Հրանտ Ղազարյանը (Հոռիզոն), ես: Ձյունառատ հունվարն էր: Մի կես մետրի չափ ձյուն էր եկել և դեռ շարունակում էր գալ: Ինչպես ամեն տեղ, պատանիները ձնագնդիկներով հարվածում էին անցուդարձող աղջիկներին, իսկ պառավ տատիկներն ու երիտասարդ կանայք ձեռնասայլակներով զբոսանքի էին դուրս բերել իրենց թոռնիկներին ու մանկիկներին: Գերցենի տնից նոր դուրս եկած, մենք քայլում էինք Տվերսկոյ բուլվարով դեպի Նիկիտսկիե վորոտի: Արբատից մետրոյով պետք է գնայինք մինչև Կիևյան կայարան, իսկ այնտեղից՝ էլեկտրագնացքով Պերեդելկինո, որտեղ մեր հանրակացարաններն էին: Ձյան բուրմունքը մոռացնել տվեց և՛ հոգնածություն, և՛ քաղց: Մեկ էլ Պարույրն ասաց.

— Տղե՛րք, եկեք պարե՛նք:

— Անհարմար է, մարդիկ ի՞նչ կասեն,— լրջորեն առարկեցի ես:

— Ինչ ուզում են՝ ասեն, ոչ մեկին մի՛ նայեք... Նրանք չկան մեզ համար: Թև-թևի բռնե՛ք, «քոչարի» ենք պարելու:

Պարույրն ու Միքայել Ռաշիդը լավ էին պարում, իսկ մնացածներս բոլորովին պարել չգիտեինք: Բայց «քոչարի» պարելու համար ի՞նչ է հարկավոր: Եվ փափուկ ձյուների մեջ, կրակ կտրած պարում ենք, ինչ որ ինքնագործ խմբերը՝ գյուղական բեմերի վրա: Պարի շղթան հետզհետե երկարում էր: Արագ յուրացնելով պարի տեմպը («Երկու գնա, մեկ արի») անծանոթ աղջիկներն ու տղաները պարում էին մեզնից ոչ պակաս սահուն: Հանդիսատեսի պակաս էլ չզգացվեց. պատահական անցորդները, տատիկներն ու պապիկները շրջապատել էին մեզ: Ոգևորված ծափ էին տալիս, իսկ ձեռնասայլակների մեջ պառկած մանկիկները արվեստի հանդեպ իրենց սերը արտահայտում էին զանազան անհասկանալի բացականչություններով... Մեր ինքնագործունեության ելույթը անցավ «բարձր մակարդակով»: Տարբեր կողմերից հարցեր են տալիս.

— Որտեղի՞ց եք, տղանե՛ր, ովքե՞ր եք...

Բայց մենք «հարցազրույցի» ժամանակ չունենք, ցույց ենք տալիս, որ ոչ մի բառ չենք հասկանում, միայն հայերեն հատուկենտ բառեր ենք փոխանակում ու ծիծաղում: Շատերը, հավանաբար, հարբած օտարերկրացիների տեղ դրին մեզ, ավելի շուտ՝ իսպանացիների կամ մեքսիկացիների... Դրա համար նրանք բոլոր հիմքերն ունեին, մանավանդ մեր մաշկի թուխ գույնը, միայն կիթառն էր պակասում... իսկ մեզ համար միևնույն էր, թե մեզ ինչի տեղ են դնում, ուզեցինք պարել՝ պարեցինք...



Տարեվերջյան քննություններ են գրականության տեսությունից: Պրոֆ. Պոսպելովը՝ մի շատ խստաշունչ մարդ, քառորդ ժամից ավելի նստած է քննական սենյակում, բայց ոչ ոք չի համարձակվում ներս մտնել: Ստիպված նա դուրս եկավ և չոր, իրեն հատուկ՝ խայթող տոնով դիմեց մեզ.

— Դե՛, ի՞նչ եք կուչ եկել այստեղ, ներս պիտի գա՞ք, թե՞ չէ:

Ահաբեկված լռություն: Այս անգամ նա դիմեց առանձին մարդկանց.

— Նատա՛շա, գուցե դո՞ւք գաք, թող տղաներն ամաչեն:

— Չէ՛, չէ՛, Գենա՛դի Նիկոլաևիչ, ես վախենում եմ,— անկեղծորեն խոստովանեց Նատաշան: (Նատաշա Տարասենկովա— հետագայում հայտնի արձակագրուհի):

— Այդ դեպքում՝ դուք, Գենադի Դմիտրևիչ...— հետագայում ուդմուրդ նշանավոր արձակագիր: — Որպես կուրսի ավագ և իմ անվանակից... օրինա՛կ ցույց տվեք:

— Ե՞ս,— զարմացավ Գենան,— ես... հետո... հետո...

— Դե ի՞նչ արած,— սպառնաց պրոֆեսորը,— ես տասը րոպե էլ կսպասեմ, եթե պատրաստ չեք՝ կգնամ,— և ներս մտնելով դուռը ծածկեց ետևից:

Բավական տխուր վիճակ էր, իհարկե նաև կոմիկական: Չէ՞ որ բոլորս էլ լավ պարապել ենք, գուցե նույնիսկ ավելի շատ, քան մյուս առարկաները: Քանի անքուն գիշերներ ենք անցկացրել, մեկս մյուսին հարցեր տվել, ստուգել և վերստուգել: Բայց մենք առաջին կիսամյակից հիշում ենք՝ մի փոքր սխալվելու դեպքում պրոֆեսորը, ակնոցի վերևից ծակող հայացքը հառելով քեզ՝ կասի. «Պատրաստ չե՞ք, սիրելի՛ս»:

Չանցած մի հինգ րոպե, միջանցքի մյուս ծայրից իր ալիքաձև-շտապ քայլվածքով երևաց Պարույրը: Մոտեցավ, դիմեց մեզ.

— Տղե՛րք, թո՛ւյլ տվեք ես առանց հերթի մտնեմ, ինչ կլինի, տեղ պետք է գնամ, ուշանում եմ:

— Խնդրե՜մ,— ասացինք բոլորս միաբերան և ծիծաղեցինք:

Տղաներից մեկը դուռը բացեց Պարույրի առջև, նա այնպես էլ չիմացավ, թե ինչու ենք ծիծաղում:

Բոլորս լարված սպասում ենք՝ տեսնես ինչպե՞ս է հանձնում: Րոպեները անցնում են, քառասուն րոպե... Վերջապես նա դուրս եկավ՝ փոքր-ինչ կարմրած-քրտնած:

— Կտրվեցի՞ր,— հարցրինք անհամբեր:

— Չէ՛, ինչո՞ւ:

— Ի՞նչ ստացար:

—Չգիտեմ:

Նատաշան նրա ձեռքից խլեց ստուգման գրքույկը՝ «Գերազանց»:

Այ քեզ բա՜ն: Էլ ինչո՞ւ ենք թրջված հավերի պես կուչ եկել այստեղ: Իզուր չեն ասում՝ սատանան այնքան սարսափելի չէ, որքան նրան պատկերացնում են: Ահա խընդրեմ՝ մարդը ներս մտավ և «գերազանցը» գըրպանը դրած, դուրս եկավ... Միանգամից երեք հոգի ներս մտան: Չորրորդն էր ուզում մտնել, պրոֆեսորը թույլ չտվեց: Նորից դանդաղորեն սահում են տանջալից րոպեները: Վերջապես մեկը դուրս եկավ:

— Հը, ի՞նչ ստացար:

Չի խոսում: Տրամադրությունը խիստ ընկած է: Ամեն ինչ հասկանալի է: Նորից սարսափը պատում է բոլորիս: Հետաքրքրվում ենք, թե ի՞նչ հարցեր են եղել, ի՞նչ է պատասխանել: Թվում է՝ ամեն ինչ ճիշտ է, բայց ինչո՞ւ է անբավարար... Ոչ ոք ներս չի մըտնում, զգուշանում ենք: Վերջապես դուրս է գալիս երրորդ ուսանողը: Նորից՝ անբավարար... իսկ Պարույրը «գերազանցը» գրպանը դրած, գնաց: Միակ, «գերազանցը» Ռոսպելովի առարկայից:

(Շարունակելի)

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

## ՋՅՈՒՆԸ

Երկնքում կա անթիվ ծաղիկ,
Որ բացվում են գարնանը վաղ,
Մինչև աշուն բույր են տալիս
Աչքին՝ ցողիկ, շուրթին՝ ծիծաղ:

Աշնանն՝ ինչպես ամեն ծաղիկ,
Թոշնում են և սրանք ցրտից,
Լուռ ընկնում են թերթերն աստղիկ,
Իսկ մենք գիտենք՝ ձյուն է գալիս:

## ՀԱՎԱՏԱՐԻՄ ՃՆՃՂՈՒԿԸ

Սաստիկ ցրտեց.
Ձյուն պիտի գար...
Միրանենու
Ճյուղին երկար
Թռչունները
Խորհուրդ արին.
Ասին՝ չվենք
Վաղը՝ վեցին,
Քանի ձյուն չի
Նստել սաստիկ,
Գնանք մի այլ՝
Տաքուկ երկիր:
Ճնճղուկն ասաց՝
Ես չեմ գալու,
Տունս ճյուղն է
Միրանենու.
Գարնան անուշ
Օր եմ տեսել,
Ամռան նախշուն
Ջոր եմ տեսել,
Տեսել եմ ես
Ցորենի արտ,
Ոսկե հատիկ
Ու ոսկե հարդ.
Ինչպե՞ս գնամ
Այլ երկրներ,
Այս եղածին
Ո՞վ մնա տեր:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ





# Ու թեթևացավ...

Օրը մռայլ էր,
Երկինքն անձրևեց...
Ու մարգարտաշող կաթիլներ խոշոր
Երկնքից աղմուկով թափվեցին ներքև.
Ու՞մ հոգում դիզված ամպերն էին, որ
Մեծահոգ քամին ամենուր ցրեց:

Օրը լալիս էր...
Ու նման էր նա միայնակ մարդկանց,
Կյանքում բոլորի կողմից մոռացված,
Մեկ-մեկ, հոնքերի տակից իր կիտած,
Ժպտում էր՝ դալուկ, անիմաստ, անկյանք:

Օրը տխուր էր,
Ուզում էր խնդալ և ուրախանալ,
Բայց խանգարում էր անտես մեկն անվերջ:
«Մեկ է, կհաղթեմ, գոռոզ բռնակալ»,
Սակայն՝ ե՞րբ, ինչպե՞ս, չէր կարող ասել:

Օրը մռայլ էր,
Երկինքն անձրևեց... երկինքն անձրևեց
Ու թեթևացավ օրը վերջապես,
Ու թեթևացա՞վ...

ԳՈՀԱՐ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ
Մ. Արազու անվան № 29 միջն. դպրոցի
8-րդ դաս. աշակերտուհի



ՏԻԳՐԱՆ ՔԱՆՔԱՆՅԱՆ, 8 տ. Երևան

# Սնուկը

Համարյա ժամը վեցն էր, իսկ հայրիկը դեռ չկար: Ես սկսեցի անհանգստանալ: Չլինի՞ թե բան է պատահել: Արդեն յոթին մոտ էր, երբ լսեցի ավտոտնակի դռան ճռռոցը, իսկույն վազեցի պատշգամբ: Կարմիր «Մոսկվիչը» դանդաղ մտնում էր ներս: Ես ուրախ բղավեցի.

— Հայրիկը եկա՜վ...

Իրարից առաջ ընկնելով, ես և եղբայրս՝ Սերոն, սրընթաց ներքև վազեցինք աստիճաններով: Ես հասա, գրկեցի հայրիկին:

— Հայրիկ, իսկ ինչո՞ւ ուշացար:

Պատասխանի փոխարեն, հայրիկը նստատեղի տակից, մի փոքրիկ, սև թռչնիկ հանեց: Թռչնիկը նման էր ծիծեռնակի, գլուխը փոքրիկ, կտուցը սուր և մի փոքր կլոր: Կրծքին ձվաձև մի խալ կար:

— Հայրի՛կ, որտեղի՞ց գտար այս թռչնիկին:

— Աշխատանքից դուրս եկա, մեկ էլ տեսնեմ ջրհորդանի մեջ թպրտում է:

— Նա ի՞նչ է ուտում,— հարցրեց Սերոն:

— Երևի, ճանճեր,— ասաց հայրիկը,— չգիտեմ ինչ թռչուն է, անունն ինչ է...

— «Սնուկ» դնենք անունը:

— Կարելի է,— հավանություն տվեց հայրիկը:

Գնացինք տուն: Սերոն մեր առաջից ներս վազեց և բղավեց.

— Մայրի՜կ, նայիր հայրիկը ի՜նչ է բերել:

— Ավելի լավ բան նա, իհարկե, չէր կարող մտածել...— թռչնիկին նայելով փնթփնթաց մայրիկը:

Մայրիկը չէր սիրում, երբ մենք տուն էինք բերում, ինչպես ինքն էր ասում, անպետք բաներ, սակայն, շուտով սովորում էր դրանց: Եվ մենք այդ պատճառով ուշադրություն չդարձրինք նրա խոսքերի վրա: Ես և Սերոն զբաղվեցինք Սնուկով: Առաջին հերթին մենք նրան մի քիչ ջուր տվեցինք, նա չէր ուզում խմել, անընդհատ ծվծվում էր, իրեն այս ու այն կողմ նետում, սակայն, երբ զոռով մի կում ջուր խմեցրինք, նա իսկույն հանդարտվեց, հետո մենք ճանճ բռնեցինք ու տվեցինք Սնուկին: Ճանճին նույնպես չուզեց մոտ գալ: Մենք համբերությունից ելնելով, ուժով բացեցինք կտուցը ու ճանճը ներս հրեցինք: Եվ շատ ուրախացանք, որ Սնուկը ճանճը կուլ տվեց:



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Ինչ լա՛վ է, որ Սնուկը կերավ այդ ճանճը: Նշանակում է սովից չի մեռնի: Նա արդեն վարժվում է մեզ և կապրի մեզ հետ, հետո... Մենք չհասցրինք մտածել, թե ինչ կլինի հետո, քանի որ մեզ խանգարեց մայրիկի խոհանոցից եկող ձայնը:

— Ճաշը պատրաստ է...

Ճաշից հետո մենք գտանք ալյումինե կշտամբելու առիթը բաց չթողեց.

— Ինչների՞ս է պետք այդ թռչունը: Ի՞նչ է, քի՞չ անպետք բան կա տանը:

Ճաշից հետո մենք գտանք ալյումինե մի ափսե, մեջը խոտ փռեցինք և Սնուկին դրեցինք մեջը:

— Ահա և բնակարան նոր կենվորի համար,— ժպտալով ասաց հայրիկը:

Ես Սնուկին շատ սիրեցի: Ամեն օր Սեվուկի հետ բակ էի դուրս գալիս: Նստեցնում էի ափիս մեջ, որքան կարող էի վեր էի բարձրացնում և ձեռքս դանդաղ պըտըտեցնելով, ցույց էի տալիս Սնուկին մեր բակը:

Մի անգամ ես և Սերոն փորձեցինք Սեվուկին թռչել սովորեցնել: Ես կանգնեցի փողոցի մեջտեղում, Սնուկին ափիս մեջ պահած, կտրուկ բարձրացրի ձեռքս, և նա թռավ:

— Ուռռա՛, թռչում է,— սկզբում ուրախ գոչեցի ես, և հանկարծ,— վա՛յ, վա՛յ, Սեվուկը թռչում է, հեռանո՛ւմ է...

Իզուր էինք անհանգստանում: Սնուկը մի քիչ պտտվեց օդում և նորից ցած իջավ:

— Ո՛ւֆ,— շունչ քաշեցի ես,— այլևս երբեք Սնուկին թռչել չեմ սովորեցնի:

Հունիս ամիսն էր: Սկսվել էին արձակուրդները: Ես ֆուտբոլ խաղալուց երբ հոգնում էի, զբաղվում էի Սնուկով: Գնալով ավելի էի կապվում ու սիրում Սնուկին:

Մի անգամ հայրիկն ասաց, որ գյուղ ենք գնալու՝ տատիկի մոտ: Շատ ուրախացանք և սկսեցինք պատրաստվել:

Հաջորդ օրը ես շատ վաղ արթնացա: Հետո արթնացավ Սնուկը, հետո եղբայրս, հետո՝ մայրիկը և վերջում՝ հայրիկը: Նա միշտ բոլորից ուշ է արթնանում, չնայած, ինձ թվում է, որ այսօր նա պետք է, որ վաղ արթնանար:

Սանահին հասանք, արդեն մթնով: Բոլորս շատ հոգնած էինք, իսկույն պառկեցինք քնելու: Առավոտյան ես արթնացա դարձյալ ամենից վաղ, հագնվեցի և ըզգույշ, որ ոչ մեկին չարթնացնեմ, դուրս եկա պատշգամբ: Արթնացավ ու իմ ետևից պատշգամբ ելավ Սերոն, սկսեցինք ճանճեր բռնել Սնուկի համար:

Մենք կերակրեցինք Սնուկին, հետո ես քաղց զգալով վազեցի խոհանոց:

— Մայրի՛կ, նախաճաշը պատրա՞ստ է:

— Շուտով պատրաստ կլինի,— պատասխանեց մայրիկը:

— Վա՜յ,— հանկարծ բղավեց եղբայրս,— նայի՛ր:

Ես վազեցի նրա մոտ:

— Ի՞նչ է պատահել:

— Ափսո՜ս, չտեսար, թե Սնուկը ինչպե՜ս է թռչում:

— Իսկ ո՞ւր է նա:

— Այնտե՛ղ՝ պարտեզում:

— Սնուկը չկա,— ասացի ես մոտենալով այն թփին, որին մատնացույց արեց եղբայրս:

— Ինչպե՞ս թե չկա,— զարմացավ Սերոն,— բայց... բայց...

— Էլ ի՞նչ «բա՜յց... բա՜յց»,— բղավեցի ես և մի լավ հասցրեցի եղբորս:

Նա ինձ պատասխան չտվեց և միայն տրորեց ցաված տեղը:

Սկսեցինք փնտրել Սնուկին:

— Որտե՞ղ, որտե՞ղ իջավ,— հազար անգամ հարցրի եղբորս, հազիվ զսպելով ինձ, որ լաց չլինեմ:

— Ես իմ աչքով տեսա... նա... ընկավ... ինձ թվում է...

Մինչև երեկո փնտրեցինք, Սնուկը չըկար ու չկար:

Երբ պառկեցինք քնելու, երկար ժամանակ քունս չէր տանում: Հետո ինձ թվաց, թե մեկը կանչում է ինձ: Վազեցի պատըշգամբ ու տեսա Սնուկին:

— Սնո՜ւկ,— գոչեցի ես և վազեցի նրա մոտ, առա ձեռքերիս մեջ: — Որտե՞ղ էիր...

Մենք քայլեցինք լճի ափով: Ես ջուրը մտա և ինձ հետ տարա Սնուկին: Սկզբում նա վախենում էր, բայց ես համոզեցի նըրան, և մենք սկսեցինք լող տալ: Հանկարծ Սնուկը սկսեց շնչահեղձ լինել, բերանը բաց՝ հազիվ որսում էր օդը:

— Սնո՜ւկ, քեզ ի՞նչ եղավ,— բղավեցի ես՝ թափահարելով նրան,— ջո՞ւր գընաց կոկորդդ, Սնո՛ւկ, թե՞ քաղցած ես...

Բացեցի աչքերս:

Շուրջս բոլորը քնած էին:

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԽԱՉԱՏՐՅԱՆ
Երևանի № 88 դպրոց, 6-րդ դաս.

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԲԱՌԸ ՉԶՈՐԱՑՎՈՂ ԶԻՆՎՈՐ Է

Հայերենն աշխարհի ամենահարուստ ու ճըկուն լեզուներից է: Չկա մի երևույթ, որ չկարողանաս արտահայտել հայերենով: Բայց լեզվի ճոխությունը երևան է գալիս, երբ շըրջանառության մեջ է դրվում ամբողջ բառագանձը: Ամեն բառ չծերացող ու չմեռնող զինվոր է, որին զորացրել չի կարելի: Բառերը միմյանց չեն փոխարինում, մի բառը մյուսի դերը չի կարող կատարել, որովհետև ամեն մեկն իր եզակի նրբերանգն ունի: Բայց մենք հայերենի 150 հազար բառից գործածում ենք 5—20 հազարը, արհեստականորեն նեղացնում արտահայտչամիջոցների սահմանները: Հաճախ ծանրաբեռնում ենք մեր իմացած բառերը, նրանց վրա դնում լրացուցիչ պարտականություններ: Այդ պատճառով էլ մեր գրավոր ու բանավոր խոսքում շատ են լինում կրկնությունները, որ մեզ էլ դուր չեն գալիս: Բառերն աշխարհի ամենազգայուն էակներն են: Եկեք չչարչարենք նրանց: Դրա համար յուրաքանչյուրը պիտի հարստացնի իր բառապաշարը և սովորի, թե որ բառը որտեղ գործածի:

ՄԱԶ, ԲՈՒՐԴ

Այս երկու բառերն էլ դուք գիտեք: Նրանց ուսերին է դրվել նաև ուրիշ բառերի բեռները: Այս երկու բառերը շատ «ազգականներ»՝ հոմանիշներ ունեն, որոնք մնացել են բառարաններում և ձանձրացել են անգործությունից: Եկեք թեթևացնենք **մազ** ու **բուրդ** բառերի բեռը:

Ահավասիկ:

Մազ բառն ունի **հեր** հոմանիշը: Մեր նախնիները **հեր** են կոչել մարդու (մասնավորապես այր մարդու) գլխի մազերը: Այդ բառից են կազմված **գանգրահեր** (գանգուր մազեր ունեցող), **շիկահեր** (շեկ մազեր ունեցող) բառերը: **Հեր** արմատով են կազմված **հերախտ** (մազերի հիվանդություն), **հերակապ** (մազերը կապելու ժապավեն), **հերահատ** (կտրած

ՀԵՐ
ՎԱՐՍ
ԾԱՄ
ԳԵՍ
ՋԱՐ
ՍՏԵՎ
ԽՈՋԱՆ
ԱՍՐ
ԳՁԱԹ
ԳԵՂՄ

մազեր), **հերատ** (մազ չունեցող), **հերատուկ** (ծամը կտրած, անամոթ կին), **հերարձակ** (մազերն արձակ), **հերացանց** (մազերը հավաք պահելու ցանց) բառերը:

Մազ բառի մյուս հոմանիշն է **վարս** բառը: **Վարս** նախնական իմաստով նշանակել է գլխի երկար մազեր: Դրա համար էլ **վարս** էին անվանում հատկապես կնոջ մազերը: Հիմա ժողովրդական լեզվում մնացել է **վարսդ կտրեմ** արտահայտությունը: Ի՞նչ է նշանակում դա: Հին Հայաստանի մի քանի գավառներում այսպիսի սովորություն կար. որևէ կնոջ խայտառակելու համար կտրում էին նրա մազերը, որպեսզի ամենքն իմանան, որ նա վարկաբեկված է: Բայց որոշ վայրերում էլ վարս կտրելն այլ իմաստ է ունեցել: Այսպես, Ղարաբաղում փեսան հարսնացուի մազերից մի փունջ էր կտրում, որով ասես «սեփականում էր» նրան: Այս դեպքում **վարսդ կտրեմ** արտահայտությունը նշանակում էր տվյալ աղջկանը հարս դարձնել, կնության առնել:

**Վարս** արմատից են կազմված **վարսավիր** և **վարսահարդար** բառերը: Վարս բառին համազոր է ծամը: **Ծամդ կտրեմ** արտահայտությունը նույն իմաստն ունի, ինչ **վարսդ կտրեմը:**

Հիմա մի պահ կանգ առնենք: Ենթադրենք շարադրության մեջ դուք պետք է խոսեք կնոջ մազերի մասին: Այդ դեպքում կնոջ վարսեր գրելն ավելի ճիշտ կլինի: **Ծամ** և **վարս** բառերին համազոր է **գես** բառը, որ նշանակում է երկար մազ: Գեսից է կազմված **գիսակ (ծամ)** բառը: Մենք հաճախ ենք լըսում **գիսավոր աստղ** կամ **գիսաստղ** արտահայտությունը: Դա պատկերավոր խոսք է, որ նշանակում է պոչավոր աստղ:

Այսպիսով իմացանք, որ **մազ** բառի փոխարեն կարող ենք գործածել նաև **հեր, վարս, ծամ, գես** բառերը: Բայց չմոռանանք ասել, որ **մազ** բառն էլ բառաբարդումներում և առանձին բառակապակցություններում այլևայլ իմաստներ է ստանում: Այսպես. հայերենում նուրբ ու փափուկ մազը կոչվում է **աղվամազ:** Այդպես է կոչվում նաև պատանիների երեսին բուսնող նուրբ մազը: **Մազ մընաց** նշանակում է քիչ մնաց (օրինակ, մազ մնաց, որ փոսն ընկնեի), **մազը երեսին չորացած** (այսինքն՝ նիհար), **մազերը բիզ-բիզ կանգնեցին** (փշաքաղվեց), **մազերը քաթան դարձան** (սպիտակեցին), **մազին դիպչել** (վըրնասել) և այլն:

Ավելացնենք, որ Հայկական լեռնաշխարհում եղել են **մազե կամուրջ** անունով բազմաթիվ կամուրջներ: Ժողովուրդը շատ նրբանկատ է: Նեղ, «մազի պես» բարակ, կիրճերի վրայով գցված կամուրջներն անվանել է մազե:

Հիմա ամենքը ձիու մազին մազ են ասում: Բայց հայերենում ձիու մազը (լինի բաշի թե պոչի վրա) կոչվում է **ձար:** Դրանից է կազմված **ձարմաղ** (ձիու մազից պատրաստված մաղ) բառը: Ձիու մազից՝ այսինքն ձարից մաղ պատրաստողին էլ անվանում են **ձարագործ:**

**Ստև:** Սա հայերենի տարեց բառերից է: Այսպես է կոչվում բարակ ու կարճ, ինչպես նաև ասեղանման կոշտ ու սրածայր մազը: Խոզի, շան, բայց ավելի շատ՝ ուղտի մազին ասում են **ստև:** Այդպես է կոչվում նաև ուղտի ստևից պատրաստված հագուստը և բույսի փուշը: Ի դեպ, ըստ ավանդության Ստև անունն է կրել Մովսես Խորենացու հայրը՝ հավանաբար փոքր հասակում ստևի հետ խաղալու համար):

**Խոզան** կամ **խոզանաստև** է կոչվում խոզի մազը, խոզան բառից է ամենքիս ծանոթ խոզանակը:

**Բուրդ** բառն ունի հետևյալ հոմանիշները. **ասր, գզաթ, գեղմ: Ասր** է կոչվում ոչխարի բուրդը (կտրած ու մաքրած), ինչպես նաև նույն ասրից պատրաստված հագուստը: Բայց պիտի հիշել, որ **ասր** է կոչվում ոչխարի հատկապես սպիտակ բուրդը, այդ պատճառով էլ **ասր** նշանակում է նաև **սպիտակ** (ասրափայլ-սպիտակափայլ): **Ասրաբեր** նշանակում է բրդատու, **ասրագործ՝** բրդից կտոր գործող, **ասվե** կամ **ասրյա՝** բրդյա, ասրեղեն կամ ասվեղեն՝ բրդից պատրաստված կտորներ:

Սովորեք **ոչխարի բուրդ** ասելու փոխարեն օգտագործել նաև ոչխարի **ասր** արտահայտությունը: **Ասր** բառից են **Ասրի** անձնանունը և **Ասրյան** ազգանունը:

**Գեղմ:** Այսպես է կոչվում նուրբ բուրդը: Հաճախ ասում են նրբագեղմ ոչխար, որ նշանակում է նուրբ բուրդ ունեցող ոչխար: Դուք անպայման լսել եք **ոսկեգեղմ** բառը: Ըստ ավանդության արգոնավորդները՝ հույն առասպելական հերոսները, «Արգո» նավով գալիս են Կոլխիդա, որպեսզի հափշտակեն կախարդական ոչխարի ոսկե գեղմը: Մտաբերեցի՞ք:

**Գզաթ:** Նույնպես ոչխարի բուրդ է նշանակում, որից կազմված են **գզել, գզոց** (բուրդ գզելու գործիք), **գզրար** (բուրդ կամ բամբակ գզող արհեստավոր) բառերը:

Դուք կարող եք ձեր հուշատետրերում գրի առնել այս բառերն ու բառիմաստները: Աշխատեցեք ոչ միայն մտապահել, այլև օգտագործել ձեր գրավոր ու բանավոր խոսքում:

ԷՌՆՍՏ ՍԵՏՈՆ—ԹՈՄՍՈՆ

# ՎԵՐԵԼՔ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



Հեռավոր հարավարևմըտյան անապատում կորածմոլորած մի գյուղ կար: Այդ գյուղից ով կտրում-անցնում էր անապատը, տեսնում էր իր առջև մինչև երկինք հասնող մի լեռ: Այդ լեռը բարձրանալ կարող էր միայն նա, ով ուժեղ էր ու դիմացկուն: Բայց գյուղի բոլոր տղաներն էլ երազում էին այդ: Մի անգամ ցեղի առաջնորդը նրանց ասաց.

— Ճամփա՛ ընկեք, աշխատեք բարձրանալ լեռան գագաթը, գնացեք, քանի ուժներդ պատում է: Ով հոգնի, կարող է վերադառնալ տուն, բայց թող իր հետ բերի մի ճյուղ այն տեղից, որտեղից որ ետ կդառնա:

Տղաները ճամփա ընկան դեպի լեռը և ամեն մեկը հույս ուներ, որ անպայման կհասնի լեռան գագաթը: Շուտով մեջներից մի հաստլիկ-կարճլիկը ետ դարձավ, եկավ գյուղ և առաջնորդին մեկնեց կակտուսի մի տերև: Առաջնորդը քթի տակ ժըպտաց.

— Դու անապատը չես կտրել անցել: Դու չես հասել նույնիսկ լեռան ստորոտին:

Քիչ անց վերադարձավ երկրորդ տղան և մեկնեց առաջնորդին օշինդրի ճյուղ:

— Դու հասել ես ստորոտին,— շշնջաց առաջնորդը,— բայց նույնիսկ փորձ չես արել բարձրանալ:

Երրորդը վերադարձավ ձեռքին բարդու ճյուղ:

— Վատ չէ,— գովեց նըրան առաջնորդը,— դու հասել ես մինչև աղբյուրը:

Ժամանակ անց հայտընվեց տղաներից ևս մեկը, ձեռքին դժնիկի ճյուղ: Տեսավ առաջնորդն ու ժպտաց.

— Դու բարձրացել, հասել ես լեռան մինչև առաջին ժայռը:

Արևը բավականին թեքվել էր, որ վերադարձավ տղաներից ևս մեկը, ձեռքին մայրու ճյուղ, ծերունին գոհունակությամբ գլխով արեց:

— Դու հաղթահարել ես վերելքի կեսը:

Մեկ ժամ անց տղաներից մեկն էլ եկավ, ձեռքին սոճու ճյուղ:

— Դու անցել ես վերելքի երեք քառորդը· կեցցե՛ս:

Արևն արդեն մայր էր մըտել, որ վերադարձավ գընացածներից վերջինը. դա գեղեցկատես, բարձրահասակ· համակրելի մի տղա էր: Նրա ձեռքին ոչինչ չըկար, բայց դեմքը փայլում էր:

— Հայր իմ,— դարձավ նա առաջնորդին,— այնտեղ ուր ես եղա, ծառ չի աճում, բայց այնտեղից ես տեսա շողշողուն ծովը:

Ծերունու դեմքը նույնպես շողշողաց ուրախությունից, և նա արտասանեց բարձր ու հանդիսավոր, ինչպես երգի բառեր.

— Ես այդ հասկացա, երբ որ նայեցի քո աչքերին: Դու հասել ես կատարին· քեզ հարկավոր չէ ճյուղ-խորհրդանիշ: Հաղթանակը ճառագում է քո աչքերում, քո ձայնի մեջ: Զավա՛կս, դա քո կյանքի բարձունքներից մեկն էր· դու տեսար լեռն իր ողջ վեհությամբ:



# ԵՐԿԻՐԸ՝ ՄԱՆՈՒԿՆԵՐԻՆ, ՄԱՆՈՒԿՆԵՐԸ՝ ԵՐԿՐԻՆ

Կուբայում երեխաների մեծանալուն չեն սպասում. երեխան ամենավաղ հասակից ապրում է ընտանիքի, տան հոգսերով, ուրախություններով ու վշտերով: Կուբացի ամեն մի երեխա լավ գիտե իրենց ընտանիքի նյութական հնարավորությունները, նաև այն, թե որքան են վաստակում հայրն ու մայրը և ինչի վրա են ծախսում վաստակածը: Եվ հենց առաջին հնարավորության դեպքում երեխան աշխատում է օգնել մեծերին: Աշխատանքը ինքն իրեն մտնում է երեխայի կյանքի մեջ: Երբ իմանում ես այս բոլորը, պարզ է դառնում, թե ինչու են երեխաներր այդքան վաղ մեծանում Կուբայում: Նրանք չեն լինում ո՛չ քմահաճ, ո՛չ ձանձրացնող, ո՛չ էլ չափազանց պահանջկոտ:

Երեխաների հետ այստեղ ընդունված է խորհրդակցել ոչ միայն ընտանիքում: Նույնիսկ պետության ղեկավարներն են անհրաժեշտ համարում խոսել երեխաների հետ, եթե հարկավոր է լինում մի վըճիռ ընդունել, որը անմիջական կապ ունի երեխաների հետ: Այսպես, սովորողներն իրենք են ընտրում իրենց դպրոցական համազգեստի գույնը, որոշում, որ պատիկների մոտ, օրինակ, թող փեշը, տաբատն ու բերետը մորեգույն լինեն, միջին դասարաններում՝ երկնագույն, բարձր դասարաններում՝ կապույտ կամ դեղին: Եվ կամ ե՞րբ է ավելի հարմար երեխայի օրը տոնել:

Գալով Խոսե Մարտիի անվան պիոներական ճամբար, երեխաներին այս մասին է հարցրել Ֆիդել Կաստրոն: Ընտրել են հուլիսի երկրորդ կիրակին: Հիմա ամեն տարի այդ օրը հանրապետությունը իր երեխաների համար նվեր է պատրաստում. նոր դպրոց կամ պիոներական ճամբար, հետախույզ-պիոներների կենտրոն կամ նոր մշակութային կենտրոն է կառուցվում:

Հաճախ են ասում, Կուբան՝ երեխաներն են: Երեխաներն իսկապես շատ են այստեղ, ազգաբնակչության մեկ քառորդը: Իսկ լինում են ժամեր, երբ կարծում ես, որ նրանք, թերևս, շատ ավելի շատ են. Կուբայի առավոտը զարդարված է դըպրոցական համազգեստի գույներով, որն, ի դեպ, անվճար է տրվում երեխային: Եվ յուրաքանչյուր դպրոցականի վզին կարմիր փողկապ կա: Բոլոր երեխաները, ըսկըսած առաջին դասարանից մինչև իններորդը, Խոսե Մարտիի անվան պիոներական կազմակերպության անդամ են: Կազմակերպության մեջ միայն ծնողների համաձայնությամբ կարելի է մտնել: Հանդիսավոր արարողության ժամանակ, որին անպայման մասնակցում են հայրերն ու մայրերը, մեծերն էլ իրենց հերթին են պարտավորություններ ստանձնում. օրինակ՝ օգնել պիոներական այն կոլեկտիվին, որի մեջ մտնում է իրենց որդին: Եվ հենց այդ պատճառով, երևի չի գտնվի այնպիսի ընտանիք, որտեղ չիմանան, թե ինչով են զբաղվում պիոներները, որտեղ պատկերացում չունենան այդ մանկական կազմակերպության աշխատանքի հիմնական ուղղությունների մասին: Իսկ ուղղությունները չորսն են: Նախ՝ ուսումն ու աշխատանքը: Երկրորդ՝ բարոյական կատարելագործու-

մը: Չէ՞ որ յուրաքանչյուր պիոներ ուզում է իսկական կոմունիստ դառնալ: Երրորդ՝ իր երկրի պատմության ուսումնասիրությունը: Եվ վերջապես՝ անհատի կուլտուրական և ֆիզիկական կատարելագործման ծրագիրը:

Հեղափոխությունը դպրոցի մի բոլորովին նոր տեսակ է ստեղծել. «դաշտի դպրոց», որն, անշուշտ, թելադրված է այս երկրի կյանքի առանձնահատկություններով: Այս ուսումնական հաստատությունները տեղավորված են գյուղական վայրերում և հանդիսանում են գիշերօթիկ դպրոցներ, որտեղ հավաքվում են շրջակայքի բոլոր քաղաքների ու գյուղերի երեխաները: Վեց օր պարապմունքներ են լինում: Շաբաթ օրերը հատուկ ավտոբուսներով դպրոցականներին տուն են տանում:

Իսկ ինչու՞ է «դաշտի դպրոց» կոչվում: Յուրաքանչյուր այսպիսի գիշերօթիկ դպրոցի մի գյուղատնտեսական տեղամաս է կցված, որը ամբողջապես սովորողներն են մշակում: Ոչ մի կուբացի պատանի չկա, որը աշխատանքային դաստիարակության դպրոցն անցած չլինի: Բայց մինչ այդ դպրոցի աշակերտ դառնալն էլ երեխաները շատ ունակություններ են ունենում: Դեռ տարրական դպրոցի փորձադաշտերում ու այգիներում նրանք սովորում են բույսեր խնամել և աշխատանքային այլ փորձեր են ձեռք բերում: Այսպիսով, երեխայի դպրոցում գտնվելու առաջին օրից, ուսմանը զուգակցվում է աշխատանքը: Այդ պատճառով «դաշտի դպրոցներում» դեռահասներին արդեն հանձնարարում են կարևորագույն գյուղատնտեսական կուլտուրաների՝ ցիտրուսների ու սուրճի աճեցումը: Եվ դպրոցականների ներդրումը երկրի տնտեսության մեջ բավական նշանակալից է: Երեխաները հասկանում են այդ և յուրջ են վերաբերվում իրենց աշխատանքին, գիտակցելով, որ հանրապետությանը բանվորական ձեռքեր են պետք:

Ինչպես ընտանիքում, այնպես էլ դպրոցում, երեխաներին չեն մեկուսացնում կյանքից:

Չի կարելի մոռանալ, որ Ազատության հոյակապ կղզին թշնամիների օղակի մեջ է, նրա ժողովուրդը միշտ պետք է պատրաստ լինի իր հայրենիքի պաշտպանությանը: Յուրաքանչյուր պիոներ պետք է սովորի գիշերելու հարմարություն ստեղծել և կերակուր պատրաստել, նույնիսկ եթե նա առանց սննդամթերքի սարերը կամ անտառն է ընկել, ինչպես նաև անձրևների ժամանակ հագուստ չորացնել, անծանոթ վայրում ճանապարհ գտնել և այլն: Ելույթ ունենալով երեխաների առաջ, Ֆիդել Կաստրոն ընդգծեց, որ հանրապետությունն ուզում է նրանց որպես հեղափոխության մարտիկներ տեսնել, որոնք սիրում են և կարող են պաշտպանել իրենց հայրենիքը, ուրեմն և իրենց ընտանիքը՝ ամեն տեսակ փորձություններից ու թշնամիներից:

Ընտանիքն ու ընտանեկան կապերն այստեղ չափազանց լրջորեն են մեծարվում: Գոյություն ունեն բազմաթիվ տոներ, որոնք ազգային են համարվում. Հոր օրը, Մանկան օրը, որի մասին արդեն խոսվեց: Ամենամեծարվող տոնը Մոր օրն է, երբ մեծարում են կյանք պարգևող, ընտանեկան օջախը պահպանող կնոջը: Եվ պատահական չէ, որ Կուբայի կանանց ֆեդերացիան ամենահարգելի և ամենաազդեցիկ հասարակական կազմակերպություններից մեկն է երկրում: Այնտեղ, ուր խոսք է բացվում մանկան իրավունքների ու շահերի պաշտպանության մասին, եռանդուն կանայք բոլոր ուժերը ի սպաս են դնում, որպեսզի գործը մինչև վերջ հասցնեն: Նրանք ոչ միայն գործնականորեն օգնում են ընտանիքին և դպրոցին, այլև զբաղվում են զուտ դաստիարակչական հարցերով: Կուբայի կանանց ֆեդերացիայի ներկայացուցիչները դպրոցական խորհուրդներում վճռական ձայնի իրավունք ունեն, կազմակերպում են ծնողական հասարակայնության ողջ աշխատանքը դասարանական կոմիտեներում, ընդգրկելով դրանց մեջ նրանց, ովքեր կարող են զանազան խմբակներ վարել դպրոցում: Տներում օգնության կետեր են ստեղծում այն երեխաների համար, որոնք դժվարանում են տնային աշխատանքները կատարելիս:

Երկիրը բանվորական ձեռքերի մեծ կարիք ունի. երկրին կրթված, որակյալ աշխատողների նոր կադրեր են պետք: Եվ քանի որ պետության խնդիրներն ու նպատակները գիտակցվում են յուրաքանչյուր ընտանիքի կողմից և ծնողներն էլ սովորեցնում են իրենց երեխաներին ամենից վեր հասարակական շահերը դասել, Ազատության կղզու ծրագրված բոլոր պլանները կիրագործվեն:

**Տ. ՍՈՐՈԿԻՆԱ**

Հայ փայտարվեստը իր թուռն զարգացումն է ապրել միջնադարում: Այդ ժամանակներից փայտի գեղարվեստական փորագրության բացառիկ օրինակներ են պահպանվել՝ եկեղեցիների դռներ ու խոյակներ, գրակալներ ու խաչեր: Պահպանված եկեղեցական դռներից առանձնակի տեղ է գրավում Մշո Առաքելոց վանքի դուռը:

Փայտի գեղարվեստական մշակումը չէր սահմանափակվում միայն փորագրությամբ ու բարձրաքանդակներով, այլ՝ փայտի մակերեսը ծածկվում էր ոսկրե, սադափե, արծաթե նախշերով, ինչպես և այլ գույների փայտի կտորներով: Նոր-Ջուղայի առևտրականների՝ Ալեքսեյ Միխայլովիչ ցարին նվիրած, այսպես կոչված «ադամանդյա գահը» փայտամշակման ու ոսկերչական համատեղ աշխատանքի մի գեղեցիկ նմուշ է: Հայկական կիրառական արվեստի անկրկնելի նմուշներ են պահպանվում աշխարհի տարբեր թանգարաններում: Սովետական իշխանության հաստատումից հետո միայն Հայաստանն ունեցավ իր թանգարանները, որոնք լոկ միջնադարյան նմուշների ցուցադրումով չեն սահմանափակվում: Նաև մեր օրերի ոսկեբազուկ վարպետների աշխատանքներն են ցուցադրված ժողովրդական արվեստների պետական թանգարանում ու նրա մասնաճյուղերում: Այստեղ կան սքանչելի գորգեր ու կարպետներ, թրծված կավե ամաններ, կոփածո կարասկալներ ու փայտյա անկրկնելի փորագրություններ...

1977-ին Հայաստանի անտառային և փայտամշակման արդյունաբերության մինիստր Ալբերտ Ստեփանյանի, Գրիգոր Խանջյանի և Հովհաննես Շարամբեյանի նախաձեռնությամբ Երևանում հիմնադրվեց փայտարվեստի ցուցասրահ: Իր տեսակի մեջ եզակի այս թանգարանի հիմնական նպատակն էր հարություն տալ փայտարվեստի կորչող ավանդույթներին, պահպանել ու զարգացնել հայ փայտագործ վարպետների փորձը:

Այսօր այդ թանգարանն արդեն դարձել է երևանյան տեսարժան վայրերից, որտեղ մեր օրերի վարպետների աշխատանքներն են ցուցադրվում: Որքան էլ ներկայացվող աշխատանքները ժողովրդական ավանդների վրա են խարսխված, նույնքան էլ ինքնուրույն են և խոսում են հեղինակների ինքնատիպության մասին: Թանգարանի ցուցանմուշներից շատերը «շրջագայել» են աշխարհի շատ երկրներում, ցուցադրվել ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Բելգիայում, Պորտուգալիայում, Կանադայում, Նորվեգիայում...

ՍՊԱՐՏԱԿ ՂԱՐԱԲԱՂՑՅԱՆ



## ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ

Մի դասընկերուհի ունեմ, եթե պատահում է, որ գրավոր աշխատանքից նա «4», ես՝ «5» եմ ստանում, անպայման վերցնում է տետրակս ու սկսում ստուգել:

Երբ դասարանցիներից մեկնումեկն ինձ խնդրում է չհասկացած ինչ-որ բան բացատրել, նա գալիս թևս քաշելով ասում է.

— Քո բացատրելը նրանց պետք չէ, թող արի այս կողմ, ա՛յ, չեմ խոսի հետդ:

Երբեմն էլ, երբ մեկնումեկը դասը վատ է պատասխանում, նա սկսում է ծաղրել: Այդ իր արարքների համար դասարանում նրան չենք սիրում:

Եթե տպագրելու լինեք նամակս, խնդրում եմ անունս տակը չգրեք:

● Ես Ա-ին լավ ընկերուհի չեմ համարում, քանի որ նրա մեջ նկատել եմ գործի և խոսքի հակասություն: Նա ընկերասեր չէ: Մի բան ես հարցնում, չի պատասխանում, գիրք ես խնդրում կարդալու, չի տալիս, պատճառաբանում է, թե մայրիկին չի հարցրել: Մի օր դասղեկն ասաց, որ հաջորդ դասին կինո են ցուցադրելու, գնանք քիմիայի կաբինետ: Ես ընկերուհիներիցս մեկի հետ դանդաղ զրուցելով մտա կաբինետ: Բոլորը երեք-չորս հոգով էին նստել: Միայն Ա-ն էր, որ նստել էր մենակ: Նա տեսնելով մեզ, ինձ հետ զրուցող աղջկան կանչեց իր մոտ նստելու: Նա գնաց և կողքին տեղ բացեց, որ ես էլ նստեմ, բայց Ա-ն դժգոհեց, քթի տակ փնթփնթաց, թե իրենք հազիվ են տեղավորվել: Ես վիրավորվեցի, բայց ոչինչ չասացի: Այդ դեպքից հետո անցավ երկար ժամանակ: Ա-ն ամեն կերպ կեղծ ժպիտով ուզում էր շահել սիրտս, ես ուշադրություն չէի դարձնում: Մի օր էլ գրականության դասին խնդրեց, որ իր մոտ նստեմ: Ես չկարողացա մերժել: Բայց հետո նկատեցի, որ նա գրականության գիրքը չի բերել, այդ պատճառով էր ցանկանում, որ իր մոտ նստեմ: Դրանից հետո ես հասկացա, որ ընկերուհուն լավ ճանաչելու համար պետք է պարզել, թե ինչն է ստիպում նրան քեզ հետ ընկերություն անել: Եթե շահադիտական չի, ուրեմն, լավ ընկերուհի է և փորձանքի ժամանակ մենակ չի թողնի քեզ:

Այդպիսի անկեղծ ընկերուհի էի համարում Բ-ին, բայց մի դեպք պատճառ դարձավ, որ հիասթափվեմ նաև նրանից: Մի օր գնացի նրանից գիրք վերցնելու: Երբ ձայն տվի, դուրս եկավ եղբայրը:

— Բ-ն տա՞նն է,— հարցրի:

— Բ՞-ն:

Ասաց և որոշ ժամանակ լուռ մնաց:

Մեկ էլ պարզ լսեցի Բ-ի ձայնը, նա ներսից զգուշացնում էր եղբորը. «Ասա տանը չեմ»:

Հետո եղբայրը հանգիստ շարունակեց.

— Տանը չէ, չգիտեմ, թե ուր է գնացել...

Ես վիրավորված հեռացա: Դրանից հետո զգուշանում էի հետը ընկերություն անել: Սակայն մի օր, երբ «Վարդանանք» պատմավեպն էի ուզում կարդալ, գիտեի, որ նա այդ գիրքը ունի, գնացի խնդրեցի, ասաց, թե գիրքն ուրիշինն է և վախենում է տալ: Հետո պարզվեց, որ գիրքն իրենն է եղել:

Բայց ես ունեմ մի իսկական մտերիմ ընկերուհի՝ Գ-ն: Սիրում եմ նրան: Նա համեստ է, ճշմարտախոս, անկեղծ, ազնիվ և ընկերասեր: Երբ մեկնումեկը նրան վիրավորում է, նրա կապույտ աչքերը լցվում են արցունքով: Իսկ երբ մեզանից մեկը լավ գնահատական է ստանում, նրա կլորիկ դեմքը ժպտում է գոհունակ: Երբ ես հիվանդացա, նա միշտ այցելում էր ինձ, բացատրում դասերը և շարունակ հուսադրում, որ շուտով կառողջանամ: Ահա ում հետ կարելի է ընկերություն անել:

ԳԱՍՊԱՐՅԱՆ ՍՈՒՍԱՆՆԱ
9-րդ դաս. աշակերտուհի
Ադրբեջանական ՍՍՀ, Խանլարի շրջան գյուղ Կուշչի-Արմավիր

## «ՊԻՈՆԵՐԻ» ՓՈՍՏԻՑ



**Վռամ Երիցյանը սովորում է Րաֆֆու անվան № 86 դպրոցում: Երբ առաջին անգամ ծնողների հետ գնաց Ուջան, գյուղի երեխաների հետ շրջեց ձորերում, փայլփլուն խճաքարեր, ծաղիկներ ու խոտերի ցողուններ հավաքեց: Քաղաք վերադառնալով, երեկոյան սկսեց**

բերածը կտրատել, սոսնձել... Սև ֆոնի վրա՝ երիզված կապտավուն ստվարաթղթով, ղեղնավուն ծղոտե զամբյուղում հավաքված ծաղիկները, թվում էր, բուրում են: Զամբյուղից թեքվել է փշածաղիկը, մի ճերմակ ծաղիկ արդեն թոշնում է: Այնուհետև Վռամը պատրաստում է մի փոքրիկ արտույտ՝ փայլփլուն փետուրներով, որը գլխիկը թեքել է, կարծես իջնում է ամպերից՝ ծառի ճյուղին հանգստանալու:

Հիմա Վռամը սովորում է 8-րդ դասարանում: «Հմուտ ձեռքեր» հանրապետական մրցույթում նա արժանացավ պատվոգրի: Նրա և իր ընկերների աշխատանքները ցուցադրվեցին հեռուստատեսությամբ:

ԳԱՐԵԳԻՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

## ԻՐԵՆՔ ԻՐԵՆՑ ՄԱՍԻՆ

Մի անգամ, երբ քույրիկս տանը նստած գիրք էր կարդում, որոշեցի հետը կատակել: Թակեցի դուռը և ձայնըս կեղծելով ասացի.

— Կարելի՞ է:

Ես դուռը թակելու սովորություն չունեի և քույրիկս չիմանալով ով է՝ պատասխանեց.

— Այո՛:

Ես ծիծաղելով ներս մըտա:

Մի քանի անգամ նույնը կրկնեցի, մինչև որ նա ըսկըսեց բարկանալ: Հետո թողեցի գնացի հարևանի տուն: Երբ վերադարձա հայրիկս տանը էր և բարկացած.

— Քո պատճառով պատժեցի Մարինեին,— ասաց նա ինձ:

— Դու մի քանի անգամ դուռը թակեցիր,— լրացրեց Մարինեն,— իսկ երբ հայրիկն էր թակում, ես կարծեցի էլի դու ես ու գրքով հարվածեցի նրան:

— Ի՞նչ ես ասում, ես ե՞րբ եմ դուռը թակել,— սըտեցի ես:

Հայրս կարծեց, թե ճիշտը ես եմ ու դարձյալ պատժեց Մարինեին: Այդ օրվանից, ամեն անգամ քույրիկիս ազնիվ ու գեղեցիկ դեմքին նայելիս հիշում եմ արածս ու ամաչում: Ի՜նչ տգեղ բան է սուտ խոսելը:

ՆԱՐԻՆԵ ՂՈՒԿԱՍՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջան,
Նոր Կեսարիայի դպրոց,
6-րդ դաս. աշակերտուհի

Մի անգամ ես ու ընկերուհիներս գնացինք դաշտ ծաղիկ հավաքելու: Ես ծաղկի մի թուփ տեսա և ասացի, որ այդ թփից ոչ մեկը չպոկի, որ այդ թուփը իմն է, բայց նրանք պոկեցին ու նըրանցից նեղացա: Այդպես նեղացած էլ վերադարձանք տուն: Հետո փոշմանեցի: Ես մենակ էի դպրոց գնում, իսկ նրանք՝ միասին: Չգիտեի ինչպես անեմ, որ առաջվա պես հետս ընկերություն անեն: Երբ նրանց տեսնում էի, ամոթից գլուխս կախում էի կամ դեմքս շուռ տալիս: Նրանք էլ ինձ չէին մոտենում, կարծում էին, թե ես չեմ հաշտվի իրենց հետ: Երբ մենք փոխադրվեցինք հինգերորդ դասարան, ես այլևս չհամբերեցի, գնացի նրանց հետ խաղալու և նըրանք ինձ մեծ ուրախությամբ ընդունեցին: Այժմ զգուշանում եմ, որ հանկարծ մի փուչ բանի համար չընեղանամ ու չնեղացնեմ ընկերներիս:

ՄԱՐԳԱՐԻՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Գորիսի շրջ., գյուղ Շինուհայր

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 13. ՀԱՂՊԱՏԻ ՁՈՐԻ ՕՐԱԳԻՐԸ

1978 թվի աշնանը Մատենադարանի ղեկավարությունը մեզ՝ քարագնացներիս խնդրեց ձեռագրեր որոնելու նպատակով հետազոտել Հաղպատի անմատչելի քարայրները: Ես մանկուց երազում էի գտնել այդ ձեռագրերը և ահա հանկարծ՝ այդ անսպասելի առաջարկը:

Նոյեմբերի 4-ի ցուրտ երեկոյան մենք տասնչորս հոգով բեռներով և ուտելեղենով նստեցինք Ալավերդի տանող գնացքը:

Տեղ հասանք, և ճամբար հիմնեցինք Ջառնի այրում: Մեծ, ընդարձակ քարայր էր, առջևը՝ պարիսպ ու քարե բուրգեր: Առաստաղից տեղ-տեղ բարակ ջուր էր ծորում: Հենց որ տնավորվեցինք, հավաքվեցինք խորհրդի: Որպեսզի գործը լավ գնա, ուժերը բաժանեցինք: Երկու հոգի պետք է շրջեին մոտակա գյուղերն ու տեղեկություններ հավաքեին քարանձավների մասին: Հետախույզների խումբը այդ տեղեկություններով պետք է գտներ քարանձավները: Չորս ամենալավ մագլցողները պետք է աշխատեին թափանցել դժվար քարանձավները, իսկ մի ուրիշ խումբ էլ՝ համեմատաբար հեշտերը: Աղջիկները մնում էին ճամբարում որպես խոհարարներ:

Տասը օր մնացինք Լոռվա ձորում: Առավոտը հաց էինք ուտում ու բարձրանում ժայռերը: Եղանակը ցուրտ էր: Մագլցելիս մատներս փետանում ու պոկվում էին ցցվածքից: Մագլցողը անընդհատ ձեռքերին փչում էր, իսկ պարանի

ծայրը պահողը տեղում ցատկոտում, որ ջրտից չհիվանդանա: Այնքան ցուրտ էր, որ լվացվելու ցանկությունը կորել էր: Միշտն ասած ջուր էլ չկար, կաթիլ-կաթիլ հավաքածը հազիվ էր ճաշի համար հերիքում:

Լոռվա ձորերում ուր գնում, մի գլուխ Ծակ այրի մասին էինք լսում: Լոռեցիները միաբերան պնդում էին, թե այդտեղ պահված են Հաղպատի վանքի գանձերն ու ձեռագրերը: Իբր թե վտանգի ժամին լցրել են քարայրը, մուտքը փակել, իսկ պատուհանը հենց այն ուղղանկյունն անցքն է, որը հեռվից էլ երևում է:

Մենք դեռ չգիտեինք, թե որքանով են ճշմարիտ այդ պատմությունները, բայց գիտեինք, որ Կիրակոս Գանձակեցու պատմելով Կայան բերդի դիմաց գտնվող այդ նշանավոր անձավը Հաղպատի վանքի մատենադարանն է եղել, որտեղ շատ ձեռագրեր էին պահվում և Հովհաննես Սարկավագ Իմաստասերը՝ այդ մեծ գիտնական փիլիսոփան, պատմագիրը և բանաստեղծը (1045-1129) սիրում էր այցելել այդտեղ: Այդտեղ էր, որ նա ստեղծեց հայոց փոքր տոմարը և գրեց իր կոթողային աշխատությունը տոմարի մասին:

Առավոտյան մենք արդեն վերևում էինք և հատիկ առ հատիկ մաղում էինք հողը: Դարավոր փոշիների տակից հանվեցին թղթյա և մագաղաթյա մոտ հիսուն տարբեր ձեռագրերի մնացորդներ: Պատահում էին մանրանկարների բեկորներ, որոնք քարայրի աղջամուղջում միշտ փայլում էին ոսկու ազնիվ փայլով: Ահա դրանցից մեկը՝ երկնքի կապույտ լազուրի վրա գեղեցիկ խորան, ոսկենկար զարդերով: Մի անկյունում ջուր էր կաթել: Գրքերը թրջվել էին, ներծծվել աղերով, քարացել ու ձեռք տալիս փշրվում էին: Բայց նույնիսկ այդ քարացած կտորները պահպանել էին իրենց գրերի վաղեմի թարմությունը:

Մենք այդ օրը հողի տակից հանեցինք և երկյուղածությամբ անդունդից իջեցրինք մի ամբողջ արկղ ձեռագրերի մնացորդներ, որոնք թվագրվում էին 10—18-րդ դարերով:

Ծակ այրի երկօրյա հետազոտություններից հետո եկանք այն հաստատ համոզման, որ այն սկզբից նախատեսված չի եղել ո՛չ գրքեր պահելու, ո՛չ էլ գրքեր գրելու համար, այլ եղել է մի սովորական ամառանոցի պահակակետ, որտեղ պահակները նստելով, հեշտ ու հանգիստ նետահարել են քարափի գլխից պարանները Զարեհ իշխանի քարանձավի կտուրին իջնող թշնամիներին: Առանց նման պահակակետ փորելու Զառնի այրը որպես ամրոց գրոշի արժեք չէր ունենա: Իսկ սա իր հերթին նշանակում է, որ Ծակ այրը կառուցվել է հենց Զարեհի օրոք, որը հայոց Աշոտ Ողորմած թագավորի և Հաղպատի վանքի հիմնադրման ժամանակակիցն է (10-րդ դար):

Առաջին օրը, երբ մենք ոտք դրեցինք Հաղպատ, գյուղացիները պատմեցին, որ մի շատ նշանավոր քարայր կա Լաստու այր անունով: Մեր այն հարցին, թե որտեղ է այդ քարայրը, գյուղացիները պատասխանեցին, որ եթե մի տասը րոպե գնանք, կմտնենք ուղիղ անձավի մեջ: Մենք հեշտ հաջողության հույսով վազեցինք դեպի ձորը: Կես ժամ վազելուց հետո վերջնականապես գլխի ընկանք, որ ծաղրասեր լոռեցիները ձեռք են առել մեզ: Մեր առջև կանգնած էր մի երկնահաս ժայռ: Նրա մեջտեղում սև անցքեր էին երևում: Հեռադիտակով նայելիս երևում էին անձավների մութ երախները, դռների փայտյա շրջանակներն ու պատերի միջից դուրս ցցված ժամանակից սևացած գերաններ: Անձավների տակ, իրարից վեց-ութ մետր հեռավորության վրա ուրվագծվում էին ժայռերի մեջ խրված հաստ գերանները: Հետո գյուղի ծերունիները մեզ պատմեցին, որ դրանք կախովի ճանապարհի մնացորդներն են: Այդ գերանների վրա ուղեգորգի նման փռվում էր վայրի խաղողի ճյուղերից հյուսված ճանապարհ-լաստը, որի վրայով մարդիկ մտնում էին այրը ու իրենց հետևից լաստը հավաքում: Այստեղից էլ առաջացել էր քարանձավների Լաստու այր անունը:

Հաղպատի ձորում մնալու վերջին օրը, երբ արդեն ավարտվել էր բոլոր հայտնի և անհայտ քարայրների հետազոտումը, մենք կրկին հայտնվեցինք Ծերեկա ձորի այդ երկնահաս ժայռերի տակ: Սպասեցինք մինչև ցրվեց այդ մռայլ ձորում ծըվարած մշուշը, և սկսեցինք հեռադիտակով ուսումնասիրել: Ճնշող ժայռեր էին՝ մռայլ ու անհարկու: Տղաներին թողեցի ժայռերի տակ, ինքս բարձրացա Ակների սարահարթը: Լաստու այրը նրա եզրի ժայռերի մեջ էր ծվարել: Բնազդով զգում էի, որ կախովի ճանապարհից բացի պետք է լինի մի ուրիշ՝ գաղտնի ճանապարհ, դեպի Ակների սարահարթը տանող:

Վերևում, հայացքով ժայռերը խուզարկելիս, աչքովս ընկան իրար վրա դրված մի քանի քարեր: Բնությունը չէր կարող այդպիսի պատ շարել, ու ես կասկածանքով մոտեցա դրանց: Մագլցեցի պատի վրայով· անցա ժայռի թիկունքն ու հայտնըվեցի երկու փոքր քարանձավների առջևում: Նրանց մեջ խեցու կտորներից ու տաշեղներից բացի, ուրիշ բան չկար: Բայց տաշեղներն ի՞նչ գործ ունեին այդտեղ: Քարի ցցվածքից բռնելով կախվեցի անդունդի վրա: Գաղտնիքը պարզվեց՝ ցածից Լաստու այրից դեպի Անկերի սարահարթ էր բարձրացել լաստե մի ուրիշ ճանապարհ, որի մնացորդները պահպանվում էին, իսկ տաշեղները վկայում էին, որ այստեղ այդ ճանապարհի համար գերաններ էին տաշել: Այդ երկու անձավները եղել էին գաղտնի ճանապարհը հսկող պահակակետերը: Ինքը՝ ճանապարհը, ոչ մի տեղից չի երևում· այդ քարանձավներից բացի: Նույնիսկ տեղացիները չգիտեն դրա գոյության մասին:

Իմ հայտնագործությամբ ուրախացած, իջա տղաների մոտ: Որոշեցինք բարձրանալ ներքևից՝ լաստի տեղով: Սկսեցինք, բայց հենց առաջին մետրերից ձախողվեցինք, ժայռը փշրվող էր, ո՛չ սեպ էր խըրվում, ո՛չ էլ ցցվածքներն էին պահում մեր ծանրությունը: Վերջը մի կերպ տղերքի ուսերին կանգնելով բարձրացա վերև: Ա՜յ քեզ անակնկալ, այստեղ էլ երկու անձավ կար, դարձյալ տաշեղներով ու խեցու կտորներով լցված: Պողպատե սեպերը ժայռի ճեղքերի մեջ գամելով սկսեցի առաջ սողալ այն նույն տեղով· որտեղով մի ժամանակ մարդիկ անցնում էին անդունդի վրա գցված երերուն լաստով:

Ահա և լաստի գերանները: Ես ապշած էի· թե ինչպես են մարդիկ կարողացել այդ բազալտե կարծր ժայռերը փորել, դնել կաղնե գերանները ու կողքերից սեպերով ամրացրել: Ախր այդ արել են ոչ թե գետնի վրա, այլ պարաններից կախված՝ երկնքի ու երկրի մեջ ճոճվելով:

Դանդաղ ու զգուշորեն անցա գերանները: Վերջապես հասա առաջին քարանձավի մուտքին: Այստեղ դռնակ է եղել, որպեսզի եթե մոռանային լաստը հավաքել, թշնամին չկարողանար ամրոց մըտնել:

Քարայրի անկյունում դրված էր կարաս, մի քիչ փոքր այն հսկա կարասներից, որոնց մեջ ուրարտական մեծազոր արքաները գինի էին պահում: Տեղու՞մ էին պատրաստել այդ կարասը, թե՞ ցածից էին բերել: Երկուսն էլ դժվար էր:

Կարասի մեջ երևի ջուր են պահել, երբ ցամաքել է այրի խորքում գտնվող բարակ աղբյուրը: Իսկ աղբյուրի ջուրն իր հերթին հավաքվել է հատակին փորված ավազանի մեջ:

Քարանձավից դուրս՝ ժայռերի մեջ խըրված գերանների վրա պատ էր շարված, որի վրայով ժամանակին մտել են հաջորդ քարայրը: Մենք էլ մտանք: Սա արդեն թոնրատունն էր: Կարծես երեկ էին մարդիկ լքել այն: Նույնիսկ թոնրի մոտ դարսված փայտերի կույտն էր մնում:

Հաջորդ երկու այրերը ավելի մեծ ու լուսավոր էին: Սրանք էլ· երևի, բնակարաններն են եղել: Այդտեղից ցած նայեցինք կիսախավար անդունդին ու ծանր խոհերը պաշարեցին մեզ. խե՜ղճ ժողովուրդ· ինչքա՜ն սև օր պետք է լիներ զավակներիդ համար, որ նրանք հանդգնեին բարձրանալ այդ դժոխային ժայռերը, որտեղից ամեն վայրկյան կարող էին ցած գլորվել:

Մենք Լաստու այրում մնացինք ընդամենը յոթ ժամ, բայց այդ ժամերի ընթացքում ավելի լավ հասկացանք մեր ժողովրդի ճակատագրի ողբերգությունը:

Վերջապես ավարտվեցին Հաղպատի ձորերում անցկացրած հուզիչ ու անմոռաց օրերը, վերադարձանք Երևան:

Մի շաբաթ հետո մենք Հաղպատի ձորերում հայտնաբերված նյութերը հանձնեցինք Մատենադարանին: Ալեհեր գիտնականները երեխաների նման խռնվում էին այն ցուցափեղկերի առջև, որտեղ ցուցադրված էին անմատչելի անձավներից հանած ձեռագրերի մնացորդներն ու գործիքները, գործիքներից շատերը նըրանց ծանոթ էին մանրանկարներից: Իսկ երբ ես ավարտեցի քարանձավների հետազոտման արդյունքներին նվիրված զեկուցումը, մի տարեց գիտնական մոտեցավ ու ասաց.

— Եթե ես երիտասարդ լինեի ու գայի ձեզ հետ, դրանք կլինեին իմ կյանքի ամենագեղեցիկ օրերը:

Մեր արշավախմբի այս աշխատանքների արդյունքների մասին հաղորդվեց ռադիոյով, հեռուստատեսությամբ և ամսագրերում:

(Շարունակելի)



ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

# Շրջանավոր ասպետն ու իր հետևորդները

(Սերվանտեսյան ընթերցումներ)

(Սկիզբը՝ 1983 № 11, 12)

Եվ մի օր էլ անտառով անցնելիս նըրանք օգնության կանչեր լսեցին: Ասպետը քաշեց ձիու սանձն ու ասաց.

— Անտարակույս իմ օգնության ու պաշտպանության կարիքը զգացող որևէ մեկն է հեծեծում:— Նա խթանեց իր ձիուն ու ասաց.— Հասնենք ու օգնենք թույլ կողմին, ինչպես վայել է թափա-

ռական ասպետին։
Նրանք վրա հասան այն պահին, երբ մեկ այլ ասպետ, այս մյուսին շատ նման, նիզակածեծ էր անում մի գյուղացու, իսկ նրանցից քիչ հեռու կաղնի ծառից կապված էր մինչև գոտկատեղը մերկ տասնըչորս-տասնհինգ տարեկան մի տղա։
— Երդվում եմ ամենապայծառ արևով, որ շանսատակ կանեմ քեզ, եթե անմիջապես չվճարես նրա հասանելիքը,— գոռում էր ասպետը՝ նիզակը գյուղացու մեջքին շարդելով։
Գյուղացին ցավից բղավում էր։
Տեսնելով այդ բարբարոսությունը, վրա հասած ասպետը բարձր ձայնով աղաղակեց.
— Անարժա՛ն ասպետ, տմարդությո՛ւն է հարձակվել անզեն ու անպաշտպան մարդկանց վրա։ Ծրշվեցե՛ք դեմքով դեպի թափառական ասպետս և ես կապացուցեմ ձեր վարմունքի ողջ ստորությունը։
Մյուս ասպետը նրա ձայնի վրա դադարեց գյուղացուն ծեծել և իր ձիու գըլուխը շրջելով, այսպես պատասխանեց նոր ժամանած ասպետին.
— Պարո՛ն ասպետ, այս մարդը, որին ես պատժում եմ, պատժում էր իր ծառային, որին դուք տեսնում եք ծառին կապված։ Այս ապիկարը ոչ միայն չի վըճարում խեղճ տղայի հասանելիքը, այլև նիպոտածեծ էր տալիս նրան, կարծելով, թե այս աշխարհում խեղճերը, զրկվածները ու բռնության զոհերը ոչ մի պաշտպան չունեն։
Մյուս ասպետն ասաց.
— Ես միայն այն եմ տեսնում, որ դուք նիզակով ծեծում եք մի մարդու, որը ոչ մի զենք չունի իր ձեռքին և չի կարող պաշտպանվել։ Ըստ ասպետական կանոնադրության՝ ձեր արածը ստորություն է, և ես այժմ դա կապացուցեմ իմ նիզակի օգնությամբ։
Այդ ժամանակ ձայնի վրա հայտնվեց մեկ այլ ասպետ ևս՝ իր զինակրի հետ, և տեսնելով, որ այստեղ մի ասպետ հոխորտում է մյուս ասպետի վրա և նիզակով սպառնում է նրան, խիստ զայրացավ, և քանի որ ազնիվ ասպետի հոգու առաջին մղումը բռնությունը պատժելն է, ապա իր նիզակն իսկույն ուղղեց նախահարձակ ասպետի վրա՝ բռնությունը բըռնությամբ պատժելու համար։
Մենամարտից առաջ, ինչպես ընդունված էր, ասպետները սկսեցին կրակոտ խոսքերով մեկը մյուսին նախատել, այն երկրորդ ասպետն ասաց, որ ինքը պատժում է առաջին ասպետին, որովհետև սա պատժում էր գյուղացուն, իսկ գյուղացին պատժում էր հովիվ տղային, և քանի որ ասպետը չի կարող հանդուրժել որևէ բըռնություն, ուստի ինքը պետք է պատժի պատժող ասպետին։
Նոր ժամանած ասպետը դրան ի պատասխան ասաց, որ ինքն էլ իր հերթին չի կարող տանել նրա բռնությունը, ուստի պետք է պատժի այդ ասպետին։
Պարզ է, որ մեծ աղմուկ էր բարձրացել, և այդ աղմուկի վրա ժամանեց մի այլ ասպետ, քիչ անց հայտնվեցին ուրիշ ասպետներ ևս, բոլորն իրենց զինակիրների հետ։ Նրանք այնքան նման էին իրար, որ երբ վիճելիս աջ ու ձախ անցան, խառնվեցին իրար, զինակիրներն այլևս նրանց մեկը մյուսից չէին ջոկում։ Նրանց խոսքերն էլ նույնն էին, բոլորն էլ ելել էին չարը պատժելու, արդարությունը պաշտպանելու, բոլորն էլ անձնվեր ու բարեպաշտ մարդիկ էին։
Մինչ նրանք աղմկում էին, զինակիրները գիտեին, որ այդ վեճը շատ ջուր կտանի, քաշվեցին մի կողմ, նստոտեցին ստվերների տակ, սկսեցին զրուցել, իրար հարցուփորձել։ Բոլորն էլ միաբերան տըրտընջում էին, որ դժվարին ու ծանր գործ է ասպետի զինակիր լինելը, բայց և այդ ամենը կարելի է հանդուրժել, որովհետև վերջում սպասում է արժանի հատուցում, իրենց տերը շուտով կգրավի որևէ կղզի, կոմսություն կամ փոքրիկ թագավորություն և կհանձնի իրենց։ Պարզվեց, որ բոլորն էլ նույն խոստումով էին ծառայում իրենց տիրոջը, նրանցից մեկը նախկին ձկնորս էր, մյուսը՝ վարսավիր, երրորդը՝ դարբին, չորրորդը՝ բեռնակիր, կային ջուլհակներ, քարտաշներ, մեծ թվով հողազուրկ գյուղացիներ և գործազուրկ արհեստավորներ։
Նրանցից մեկը գրքի խոսքերով հետևյալն ասաց.
— Ես որոշել եմ թողնել բոլոր այս ասպետական ցնդաբանությունները, վերադառնալ գյուղ և տեր կանգնել իմ զավակներին։ Իմ ասպետը խելագար է, բայց քաջ, իսկ խենթություններից ավելի նա խորամանկ է։
— Իսկ իմ տերը,— ասաց մեկ այլ զինակիր, որ ամենակարճլիկն էր, ամենահաստլիկը և, ինչպես հետո պարզվեց, զի-



Նկ. ԿԱՐԵՆ ՄՄԲԱՏՅԱՆԻ

նակիրն էր այն ամենաառաջին ասպետի, որն այս անտառում պատժում էր իր ծառային պատժող տիրոջը,— իմ տերն ամենախիզախ ասպետն է, որ երբևէ եղել է աշխարհում: Նրա մեջ խորամանկության նշան անգամ չկա, նրա սիրտը սափորի պես բաց է, նա ոչ մեկին գիտակցաբար չարիք չի անի: Հոգու պարզության համար ես սիրում եմ նրան պաշտելու չափ և չնայած նրա խելագարությանը, ես նրան երբեք չեմ կարող լքել...

— Իսկ ինձ թվում է մենք բոլորս խաբված ենք,— ասաց մեկ այլ ասպետի զինակիր:— Թագավորություններ, կղզիներ, իշխանատներ, դարբնոցներ, մաքսատներ, ամեն ինչ մեզ են տալիս, իսկ իրենք ի՞նչ պիտի անեն, հո մեր հպատակը չե՞ն դառնալու: Ամեն մի թագավորություն ունի մի թագավոր, մյուսները նրա ծառաներն են:

— Կասկածամիտ,— ասաց չափազանց հավատացյալ մի զինակիր,— մի՞թե թափառող ասպետը պետք ունի թագավորության: Նա կշարունակի իր ճանապարհը աշխարհում և բոլոր զրկվածներին տեր կդարձնի ու ամենուր արդարություն կհաստատի: Նրանց նպատակները շատ վեհ են, նրանք ոչ մի թագավորության վրա աչք չունեն:

— Գուցե վեհ են, իսկ իմ ասպետի գրպանի ոսկիների զնգոցը գնալով շատանում է:

— Ես էլ այն գիտեմ, որ իմ ասպետը փնտրվում է օրենքի կողմից, նա ժամանակին լվացքի գող է եղել, երկու անգամ դատապարտվել ու փախել է թիարանից:

— Իմ տերը նույնպես նախկին թիապարտ է, բեղ ու մորուքով նա թաքցրել է իր իսկական դեմքը, բայց նա վատ տղա չէ, ես գոհ եմ նրանից, որովհետև իր ձեռքն ընկածից մի բան էլ ինձ է բաժին հանում: Ինչ մնաց խելագարությանը, նա տասը խելոքից խելացի է, հարյուր իմաստունից փորձառու և հազար լըրտեսից նենգ: Խոսքով նա ասպետ է, բայց մասնագիտությամբ նախկինն է:— Զինակիրը ծիծաղեց՝ զնգզնգացնելով իր քսակի ոսկիները:— Դարեր շարունակ ավազակը ավազակություն էր անում և բռնվում, մինչդեռ ինչ հրաշալի միտք բերեց այն առաջին ասպետը: Իսկ մարդիկ ահա չորս դար է ծիծաղում են:

Մինչ նրանք այստեղ խոսում էին, ասպետներն արդեն հաշտվել էին, ավելին, հանկարծ որոշել էին միաբանել:

— Մի ծիծեռնակով գարուն չի լինում, մենք պետք է մեր սրերը միացնենք:

Այդ ժամանակ զինակիրներից ամենակարճլիկն ու ամենահաստլիկը տեսավ, որ իր տերը, որ ասպետներից ամենաբարձրահասակն էր ու ամենանիհարը, ծնկի եկավ և բացականչեց.

— Փա՜ռք երկնավորին, ուրեմն ես վերածնունդ տվի թափառական ասպետների դասին. աշխարհը ոչ մի բանի այնքան կարիք չունի, որքան թափառական ասպետների:— Նա ոտքի ելավ, հեծավ իր ձին ու թափահարելով իր նիզակը, գոչեց.— Առա՜ջ, առա՜ջ, և ո՛չ մի քայլ ետ...

Բոլորը շարժվեցին այստեղից, և առջևից գնում էր երկրի ամենաբարձրահասակ մարդը՝ ձիու վրա և նրա զինակիրը, երկրի ամենակարճահասակ մարդը՝ ավանակի վրա:

Այս հավաքից մի մեծ շարժում սկիզբ առավ երկրում, ամենուր սկսվեցին ասպետական խմբեր կազմվել: Նշանավոր ասպետները կամեցողներին ասպետ էին մկրտում՝ ասպետական բոլոր օրենքներով, ելնելով նշանավոր գրքի դասերից:

— Ահա՛ ոչխարի հոտը,— ցույց էին տալիս նրանց:

— Բայց, տե՛ր իմ, դրանք մարդի՛կ են,— ասում էին նորընծա ասպետները:

— Չար կախարդանքը փակել է ձեր աչքերը, ոչխարի փոխարեն մարդիկ եք տեսնում... Ահա՛ զինու տկերը:

— Բայց դրանք զինու տկեր չեն...

— Եթե ուզում ես ասպետ օծվել, մխրճիր սուրդ և քո աչքերը թող սովորեն կարմիր առվակների հոսելուն:

Ստվարանալով, ասպետները զգալի ուժ էին դառնում, սակայն ժողովուրդն այլևս ըմբոստացել էր նրանց դեմ, կռիվ էր սկսվել: Երկարատև ու արյունալի կռիվներից հետո ասպետները ի վերջո հաղթեցին ժողովրդին ու երկրում հաստատեցին արդարացի, մարդասիրական կարգեր:

Ամեն դար և ամեն մարդ յուրովի է ընթերցում ասպետության մասին գրքերը: Սերվանտեսի նշանավոր ասպետը յուրովի ընթերցեց իր նախորդների մասին գրքերը և հայտնի է, թե դրանից ինչ դուրս եկավ: Այս պատմությունն էլ արվեց՝ յուրովի ընթերցելով մեծ ասպետի մասին հայտնի գիրքը և հնարավորին չափ նույն խոսքերով, նույն անցքերով վերապատմվեց ասպետի հետնորդների արկածների մասին:

Մի անգամ ինձ կանչեցին հնագիտության ինստիտուտ և առաջարկեցին աշխատել իրենց մոտ:

— Բայց ես հնագետ չեմ և ոչ էլ՝ պատմաբան,— ասացի ես:

— Դուք գործիքներ կսարքեք:

— Ինչի՞ց, ինչի՞ համար:

— Քարից, ոսկորից, փայտից... Փորձարկման համար,— ասաց գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտորը: — Չէ՞ որ դուք արդեն մեկ անգամ եղել եք նախնադարում և քարե գործիքներ եք սարքել քարանձավաբնակների համար:

Նա ակնարկում էր այն գիտաֆանտաստիկ պատմվածքը, որ ես գրել էի երեխաների համար: Ոչ միայն պատմվածքը, ես արդեն մի քանի տարի էր, այսպես ասած սիրահարվել էի կենցաղային գործիքներին, ուսումնասիրում էի նրանց ծագումն ու զարգացումը, նույնիսկ որոշ բաներ էլ ես էի սկսել հորինել...

Հնագիտության ինստիտուտի այն բաժինը, որտեղ սկսեցի աշխատել, զբաղվում էր հնագույն ժամանակների աշխատանքային գործիքների պատրաստման հարցերով: Մենք պատրաստում էինք աշխատանքային գործիքներ՝ նույն ձևերով և եղանակներով, ինչպես այդ արել են մեր հեռավոր նախնիները: Իսկ նրանք, մեր թվարկությունից առաջ՝ հարյուր հազարից մինչև քառասուն հազար տարի առաջ, որ կոչվում է պալեոլիթի ժամանակաշրջան, ապրում էին նախնադարյան կայաններում և իրենց գործիքներն էլ պատրաստի ձևով վերցնում էին շրջապատի բնությունից: Դրանք քարի կտորներ էին՝ կաշվե փոկով կապված փայտին, զանազան ոսկրե ու փայտե քերիչներ, ցցեր ու մահակներ...

Հետո մեր հնարամիտ նախնիներն ընկրսել են մշակել կայծքարն ու բնական ապակին՝ օբսիդիանը, հայտնաբերել կրակը: Մենք այդ ժամանակաշրջանը անվանում ենք քարի դար: Քարից էին կացինները, քարից էին կտրիչներն ու քերիչները... Ու թե հարցնեք՝ ո՞րն է եղել այսօրվա այսքան բազմազան գործիքների նախահայրը՝ հնագետները ձեզ կասեն՝ քարե կացինը: Եվ մենք սկսեցինք լաբորատորիայում պատրաստել զանազան կացիններ, մուրճեր: Ծակում էինք դրանք՝ ոսկրով, ավազով, մշակում քարը՝ քարով: Իսկ երբ ստացվեցին առաջին գործիքները, մենք դրանցով սկսեցինք հաստաբուն ծառեր կտրել, պատրաստել նա-

վակ, նետեր ու աղեղներ և դարձյալ զանազան գործիքներ։ Դա անհրաժեշտ էր մեզ՝ հասկանալու համար այն կյանքը, որով ապրել էին մեր հեռավոր նախնիները։

Ես այդ ժամանակ հասկացա, որ գործիքաշինությունը ամենևին էլ հասարակ գործ չէ, որ մարդկային քաղաքակրթությունը իր զարգացմամբ պարտական է գործիքաշինությանը, հենց իրեն՝ պարզունակ քարե կացնին։

Անկեղծորեն ասած, ես երջանիկ էի իմ ընտրած մասնագիտության և նրա համար, որ վարպետ Համայակը ինձ սովորեցրեց սիրել հասարակ գործիքները՝ մուրճը, սղոցը, ռանդան... նյութական բարիքներ ստեղծող առարկաները։ Իսկ այդ ամենը սկսվեց գլուխը ծեծված մեխից։

Դա պատահեց այսպես։ Դպրոցական արհեստանոցում վարպետ Համայակը վերանորոգում էր մեր՝ աշակերտներիս կոտրած սեղան-նստարանները։ Նա խնդրեց մի քանի մեխ տալ արկղից։ Տվեցի։ Նա ծեծեց դրանցից մեկի գլուխը, տափակացրեց և մեխեց փայտի մեջ։ Կատակեցի.

— Ծեծելով ես դաստիարակում մեխերին, վարպե՛տ։

— Հա՛, բա՞.— ասաց նա,— էսպես կխրվի մինչև խորքերը և էլ դուրս չի պրծնի ու չի պատռի ձեր շորերը։

— Իսկ ինչո՞վ են մարդիկ փայտը փայտին ամրացրել, երբ չի եղել երկաթե մեխը,— հարցրեցի։

— Փայտե մեխերով,— պատասխանեց ու ինքն էլ մի քանի այդպիսի մեխեր պատրաստելով, պտուտակահանով ծակեց փայտն ու սոսնձված փայտե մեխը ամրացրեց մեջը։— Այսօր էլ հմուտ վարպետները փայտը չվիրավորելու համար այս ձևով են աշխատում։

— Իսկ ինչո՞վ են մարդիկ սղոցել փայտը, երբ չի եղել պողպատե սղոցը,— դարձյալ հարցրեցի ես։

— Սղոցի դեր են կատարել սուր՝ ատամնավոր քարերը, կենդանիների ատամները, ավազը, որը կաշեփոկով շփել են կտրվող անցքի վրա։

Հետո նա ինձ դարձյալ շատ բաներ պատմեց գործիքների, դրանք ճիշտ օգտագործելու մասին։ Եվ ես սիրեցի այդ հասարակ, անշունչ առարկաները, սիրեցի՝ ինչպես մարդկանց։ Մի՛ ծիծաղեք...

ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԾԵԾՎԱԾ ՄԵԽԸ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ու թե այժմ անգամ մի օր չեմ աշխատում իմ սիրելի գործիքներով, կարոտում եմ նրանց, ինչպես մարդիկ կարոտում են իրենց լավ ընկերներին։ Ու խղճում եմ այն մարդկանց, ովքեր չունեն սիրած գործիքներ։ Այդպիսի մարդիկ, իմ կարծիքով, հետաքրքրություններից զուրկ, ձանձրացող մարդիկ են։

# «Այս Լիբանանը եւ մեր վիճակը ի՞նչ պիտի ըլլայ»

Բեյրութի «Երվանդ Տեմիրճյան» դպրոցի սաները շարադրություն են գրել, յուրաքանչյուրն իր բաղձանքների մասին: Լիբանանը, որի մայրաքաղաքը Բեյրութն է, տարիներ ի վեր գտնվում է պատերազմի արհավիրքների մեջ, որից ոչ պակաս տուժել են և տուժում են բեյրութահայերը, ռմբակոծությունից մարդկային բազմաթիվ զոհեր են տվել, ավերվել են տներն ու դպրոցական շենքերը, դպրոցներում ամիսներով դադարում են դասերը և ռմբակոծության դադարի կարճատև միջոցներում վերսկսվում:

Ստորև տպագրում ենք բեյրութահայ երեխաների հիշյալ շարադրություններից մի քանիսը, որոնք խմբագրությանն է տրամադրել մատենագետ բեյրութահայ Պերճանույշ Պասմաճյանը:



Այս Լիբանանը եւ մեր վիճակը ի՞նչ պիտի ըլլայ: Ես պատերազմին ծնայ, ես եօթր տարեկան եղայ, դեռ պատերազմը չի վերջացաւ:

Աստուած իմ, դուն ազատէ մեզի այս փորձանքներէ, մեզի մինչեւ հիմա պահեցիր վտանգներէ, կաղօթեմ բոլոր հայերը եւս պահես: Ես կաղօթեմ, որ Լիբանանը խաղաղ ըլլայ, որովհետեւ այս տարի ծաղիկ դասարանը պիտի ավարտեմ: Շատ կուզեմ, որ մեր Լիբանանը խաղաղ ըլլայ, որպէսզի ծնողքս ուրախանեմ ու ուրիշներ ալ ուրախացնեն իրենց ծնողքը:

**ՈՎՍԱՆԻԿ ՔԷՇԻՇԵԱՆ**



Մենք կուզենք մեր հայրենիքը այցելել, բայց չենք կրնար երթալ: Աստուած, հօրս յաւ գործ տուր եւ մեզի առողջութիւն, որ հայրենիք կարենանք այցելել:

**ՍԱՐԳԻՍ ՓՈԼԱՏԵԱՆ**



Կուզեմ մէկ բան.— Հայաստան տեսնել, սիրուն Մասիսը, Արաքս գետը եւ այլն:

Հիմա եղբայրս հիւանդ է, կուզեմ, որ զինք առողջացնես, աստուած:

**ԻՎԷԹ ԳԷՈՐԳԵԱՆ**



Ով Աստուած, չեմ գիտեր, թէ դուն ուր կնստիս, արդեօք եւ օդանաւով գա՞մ քու քովդ: Մամայիս անունը Անի է, պապայիս անունը Պերճ: Ես կուզեմ պապայիս գործին յաջողութիւն, որ Հայաստան պտոյտի երթանք:

**ՄԱՐԱԼ ՊԱՍՄԱՃԵԱՆ**



Ես քեզմէ կր խնդրեմ միայն երկու բան , ով աստուած. որ ինձի շատ խելք տաս եւ Լիբանանին խաղաղութիւն:

**ՍԵՒԱԿ ՓԱՆՈՍԵԱՆ**



Ես կը խնդրեմ, որ աստուած մեզի փրկէ փորձանքներէ եւ չար ոգիներէ պահէ մեզի: Կը խնդրեմ փոքրիկ եղբայր մը, որ հետը խաղամ եւ մինակ չի մնամ եւ երբ մեծանայ, իրեն օգնեմ, որ ան ինծի պէս աշխատասէր եւ բարի աշակերտ մը ըլլայ: Ես լաւ աշխատիմ դասերուս մէջ եւ հօրս ու մօրս ուրախացնեմ: Կը խնդրեմ, որ ծնողքիս երջանիկ կեանք տաս, որպեսզի միշտ իրենց ուրախ պզտիկը ըլլամ:

**ԳԱԼԷՆ ՉՈԼԱՔԵԱՆ**

Աստուած իմ՝ ես կուզեմ իմ հօրս եւ մօրս գործի յաջողութիւններր եւ դասիս մեջ յաջողութիւն: Մենք տունին մէջ հինգ հոգի ենք, երկու եղբայր եւ մէկ քոյր՝ մօրս րսի ես քոյր մըն ալ կուզեմ ունենալ՝ բայց հայրս ալ րսաւ՝ արդէն իրար հետ կը կռուիք: Ես աստուծոյ աղօթեցի ,որ ինծի քոյր մը տայ, որ իրեն հետը խաղամ:



**ՅԱՍՄԻԿ ՄԱԹՈՍԵԱՆ**



Ի. Ա. ԿՌԻԼՈՎ

## ՍԱՐՅԱԿԸ

Ամեն մեկը իր բնատուր ձիրքը ունի·
Բայց շատ հաճախ օտար բանով կշլանան,
Ու այնպիսի գործ կբռնեն,
Որին իրենք իսկի պետք չեն:
Ահա թե ինչ կասեի ես նման մարդուն.
Թե ուզում ես, որ գործերդ հաջող գնան,
Արա հենց այն, ինչի համար ծնված ես դու:
Ինքը մի պուտ
Սարյակի ճուտ·
Այնքան անուշ երգել գիտեր կաքավի պես,
Հենց կաքավ էր ծնվել ասես:
Նրա ձայնից դաշտ ու անտառ ուրախանում,
Ամեն լսող հիանում էր, գովաբանում:
Մեկ ուրիշը գոհ կլիներ այդքան բանից.
Սա՝ «Չէ որ չէ: Սոխակի երգն են շատ  գովում»:
Նախանձ սիրտը, դժբախտաբար, այս չտարավ.
Ու միտք արավ. «Կա՛ց· ես պակաս չեմ սոխակից,
Կը երգեմ ես
Հենց նրա պես»:
Ահա երգեց.
Միայն թե ի՜նչ սոխակի ձայն.
Մեկ մլավեց,
Մեկ ճղավեց,
Մեկ մկկաց այծի նման.
Նա այնպիսի ձայներ հանեց,
Որ հավքերին ողջ թոցրեց·
Սարյակ եղբայր· մի ինձ ասա,
Այդ բոլորից, ախր, ի՞նչ շահ,
Կաքավի պես անուշ երգիր, այդ էլ է շատ,
Քան սոխակի նման, բայց վատ:

## ԳԱՅԼՆ ՈՒ ՀՈՎԻՎՆԵՐԸ

Թափառում էր մի օր մի գայլ
Ոչխարների փարախի մոտ.
Պատի ճեղքից մեկ էլ տեսավ, իրենից դեն մի քանի քայլ
Հովիվները ամուր բռնել գլուխ ու ոտ
Ու մորթում են մի ոչխարի խոշոր ու չաղ:
Իսկ շները դունչը տնկել,
Վայր են ընկել
Հաշտ ու խաղաղ:
Այստեղ գայլը տխուր-տրտում,
Վիշտը սրտում,
Դառնալով ետ,
Այսպես խոսեց շների հետ.
«Ի՜նչ վայնասուն ու աղաղակ կհանեին,
Եթե հիմա այդ նույն բանը ես անեի»:

Թարգմ. ՀԱՅԿ ԴԱՎԹՅԱՆԻ
Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

№ 42 դպրոցի Գրիշա Հակոբյանի անվան ջոկատը համարվում է ակտիվ, նախաձեռնող: Մետաղի ջարդոն կամ թղթի թափոն են հավաքելու՝ պատրաստ է, պատի թերթ պետք է լույս ընծայվի՝ ժամանակին կնկարեն, նյութերը կպատրաստեն: Վերջերս էլ որոշեցին ու ֆիզիկայի մրցույթ անցկացրին: Նախաձեռնողները, պարզ է, նաև հաղթող ճանաչվեցին: Շատ ուրախ էին. պարգևատրվեցին սիրելի առարկային վերաբերող գրքերով: Բայց ջոկատն ունի նաև իր թերի կողմերը:

Գեղամը և Արթուրը երկտարեցիներ են: Սկզբից ևեթ դասարանը սառն ընդունեց նրանց: Չէին համակրում, նույնիսկ աշխատում էին զրույցի չբռնվել: «Երկտարեցի՛ են». հեգնանք կար աղջիկների քչփչոցում: «Ի՞նչ գործ ունենք»,— առանձնանում էին տղաները: Եվ Գեղամն ու Արթուրը դասամիջոցներին, դասերից հետո իրար հետ էին, բայց և... մենակ: Նրանք իրենք էլ չէին ձգտում մյուսների հետ մտերմություն անել: «Երեխաներ են»,— մխիթարում էին իրենք իրենց: Ու դասարանում ինքնաբերաբար առաջացավ մի փոքրիկ կղզի: Գեղամն ու Արթուրը, որ դասերը չէին սովորում, ըսկըսեցին նաև բացակայել: Գնալով ավելի ու ավելի հաճախակի:

Նրանք ձանձրանում էին դպրոցում: Նախորդ դասարանում քիչ թե շատ ընկերներ ունեին, իսկ հիմա պատնեշ կար նրանց ու մյուսների միջև: Եթե առաջ քիչ թե շատ փորձում էին սովորել, ձգտում էին ետ չմնալ տարեկիցներից, հիմա արդեն ձեռք էին քաշել ամեն ինչից. «միևնույն է»:




Իսկ երբ ուսուցիչները հանդիպեցին նրանց ծնողներին, զրուցեցին ու հսկողություն սահմանեցին, Արթուրը հնարը գտավ. տանից դուրս էր գալիս պայուսակով, թե՝ տեսեք դպրոց եմ գնում, հետո պայուսակը թաքցնում էր որևէ տեղ ու նորից իրեն «ազատ» համարում: Բայց տխուր էր, նույնիսկ սիրած խաղը՝ թենիս հաճույքով չէր խաղում: Վախենու՞մ էր: Չէ՛, մի՞թե նման տղաներին սազական է վախը: Հապա՞...

— Ինչու՞ ենք Գեղամից ու Արթուրից խուսափում,— մի օր էլ ջոկատի խորհրդի նախագահ Տարոնը հարցրեց ջոկատի անդամներին:

— Նրանց ընկերանալն հեշտ բան չէ,— ասաց Նարինեն:

— Այնուամենայնիվ փորձենք...

Ու փորձեցին... Փորձն ավարտվեց նրանով, որ հայտնաբերեցին նրանց մեջ որոշ լավ գծեր: Գեղամը ֆիզիկայից ուժեղ էր և չէր թողնում որևէ մեկին վիրավորել համադասարանցի աղջիկներին: Նույնիսկ ընկերոջը՝ Արթուրին բոլորի ներկայությամբ զգուշացրեց.

— Տես հա՛, չփորձես խանգարել դասերը կամ վիրավորել մեկնումեկին:

Դասընկերները շատ էին տեսել Գեղամին հարևաններին օգնելիս, ծանր աշխատանքներ կատարելիս: Ի՞նչ բան է: Իսկ բոլո՞րս ենք մեր բակի տատիկներին ու պապիկներին մեր կարեցածի չափ օգնում:

Ու ջոկատը որոշեց... Միայն որոշեց: Երբ մետաղի ջարդոն էին հավաքում, ոչ մեկի մտքով չանցավ Գեղամին ու Արթուրին էլ կանչել, բասկետբոլի մրցումներ էին անցկացնում՝ նրանց թիմ չհրավիրեցին: Եվ պարտվեցին: Իսկ նրանք թիմին կարող էին օգտակար լինել: Գեղամի մայրը երկար ժամանակ հիվանդ պառկած էր տանը: Ոչ ոք չմոտեցավ, չհարցրեց Գեղամին, թե ինչով կարող ենք թեթևացնել իր հոգսը:

Գեղամն ու Արթուրն էլ իրենց հերթին են մեղավոր: Գոռոզ են պահում իրենց, հաշիվ չեն տալիս իրենք իրենց արարքների մասին, շարունակում են դասերից փախչել, թափառել փողոցներում, իրենք չեն սթափվում, սթափեցնող էլ չկա: Նրանց ու դասարանի միջև գոյություն ունեցող պատը մնում է:

Ընկերանալն իրոք դժվար է: Ընկերություն պահպանելը առավել ևս: Որոշումը գործ դարձնելը երևի ամենադժվարն է: Այդ դժվարությունը 7-րդ «բ» դասարանի աշակերտները պետք է հաղթահարեն, քանի որ անկասկած կուզենային իրենց ջոկատի մասին ասվեր՝ ամենաընկերասեր, ամենահամերաշխ ջոկատն է:

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

# Հայկական տոմարի պատմությունից

Ամանորը բարդ բառ է, կազմված ամ և նոր արմատներից: Ամ նշանակում է տարի, ամանոր՝ նոր տարի: Ամանորը առաջին անգամ հունվարի 1-ից ընկրսել են հռոմեացիները՝ Հուլիոս Կեսարի օրոք, մ. թ. ա. 46 թվին: Հուլիոս Կեսարի հրամանով կազմված այդ նոր տոմարը կոչվում է հուլյան տոմար և աշխարհի շատ ժողովուրդների ծառայել է մինչև 18—19-րդ դարերը:

Հուլյան տոմարով տարին ուներ ոչ թե 365 օր, 5 ժամ, 48 րոպե, 46 վայրկյան, այլ 365 օր 6 ժամ: Այսինքն՝ ճշգրիտ հաշվումներով որոշված տարուց 11 րոպե 14 վայրկյանով երկար էր: Անճշտությունը վերացնելու նըպատակով Հռոմի Գրիգոր XIII պապը (XVI դար) Եվրոպայի նշանավոր տոմարագետներին հրավիրում է Հռոմ , որպեսզի մշակեն նոր տոմար: Ընդունվում է իտալացի բժիշկ և աստղագետ Ալոիս Լիլիոյի նախագիծը, որը սկսվում է կիրառվել 1582 թ. հոկտեմբերի 15-ից: Քանի որ հուլյան տոմարի 11 րոպե 14 վայրկյանի սխալը մ.թ.ա. 46 թ. մինչև 1582 թ. կուտակվել, դարձել էր 10 օր, այսինքն՝ ժամանակը 10 օր ետ էր ընկել, ուստի սխալը ուղղելու համար որոշվեց 1582 թ. հոկտեմբերի 4-ից հետո ոչ թե հոկտեմբերի 5 ընդունել, այլ՝ հոկտեմբերի 15:

Այսպես սկսվեց նոր տոմարը, որը Հռոմի Գրիգոր պապի անունով կոչվում է «գրիգորյան»:

Գրիգորյան տոմարը մոտ 340 տարվա ընթացքում ընդունվեց բոլոր պետությունների կողմից: Ամենավերջին ընդունողը եղավ Եգիպտոսը՝ 1928 թվին, իսկ Ռուսաստանը նոր տոմարին անցավ 1918 թ. հունվարի 1-ից, Հայ իրականության մեջ նոր տոմարին առաջինը անցել են լեհահայերը, 1783 թ. հունվարի 1-ից:

**Մեր ամսագրի 1988 թ. № 9-ում տպագրված «Ի՞նչ գիտեք Կարմիր խաչի մասին» մրցույթի արդյունքները ամփոփելով, ՀՍՍՀ Կարմիր խաչի ընկերության կենտկոմը որոշեց պարգևատրել Երևանի № 59 դպրոցի սկզբնական կազմակերպությանը, իսկ նույն դպրոցի աշակերտներ Գայանե Ստեփանյանին, Արթուր Ալավերդյանին, Լիաննա Սուլեյմանին, Նարինե Ներսիսյանին, Նաիրա Հովհաննիսյանին, Լուսինե Գուրգենյանին, Նունե Ղևոնդյանին, Վարազդատ Հովհաննիսյանին և Սվետլանա Չոբանյանին, որոնք գրավել են երկրորդ—երրորդ տեղերը (առաջին տեղը ոչ ոքի չի հատկացվել), արժանացնել ՀԿԽԸ ԿԿ պատվոգրի:**



**«ՊԻՈՆԵՐ» № 11 ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ**

**1. Մինչև բաժանելը կար 52 ձուկ:**
**2. Հայրը պետք է տանի 64 ձմերուկ:**
**3. Պայուսակում կար 301 ձու:**

Հայոց տոմարի առաջին ամիսը կոչվել է Նավասարդ: Այն հերթականությամբ համընկնում է հուլյան տոմարի հունվարին: Մեր ամանորը եղել է Նավասարդի 1-ին: Նավասարդը կազմված է հնդեվրոպական նախալեզվի նավ (նոր) և սարդ (տարի) արմատներից:

Նավասարդի ծագման մասին Անանիա Շիրակացին (VII դար), Հովհաննես Սարկավագ Իմաստասերը (1045—1129) և այլ հեղինակներ ավանդում են, որ Նավասարդը Հայկ Նահապետի դուստրերից մեկի անունն էր, որով մեր նախահայրը անվանել էր տարվա առաջին ամիսը:

Նավասարդի 1-ը, Ագաթանգեղոսի վկայությամբ, հյուրասիրության աստված Վանատուրին է նվիրված եղել: Այդ տոնը հնում կոչել են «Նավասարդյան տոն» և տևել է օգոստոսի 11-ից մինչև սեպտեմբերի 9-ը: Տոները ուղեկցվել են գուսանների երգ-երաժշտությամբ ու պարերով, կրկեսային ներկայացումներով, զինախաղերով ու այլ մրցումներով: Ազգագրական ու պատմագիտական տվյալները ցույց են տալիս, որ Նավասարդյան տոները ժողովրդի մեջ գոյատևել են մինչև XX դարի սկիզբները: Իսկ Նավասարդի 15-ը նվիրված է եղել Անահիտ աստվածուհուն: XI դարի հայ մեծ իմաստասեր, մաթեմատիկոս ու երաժշտագետ Գրիգոր Մագիստրոսի (990—1058) մի նամակում պահպանվել է այդ տոներին երգվող երգերից մեկը, որը հայ ժողովուրդը հնագույն ժամանակներից պահպանել ու հասցրել էր մինչև XI դար:



Ով պիտի տար ինձ ծուխը ծխանի
Եվ առավոտը Նավասարդի,
Եղնիկների վազքը
Եվ եղջերուների վարգելը.
Մենք փող էինք փչում
Եվ թմբուկ զարկում,
Ինչպես օրենքն է թագավորների:

**ՌԱՖԻԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ**


*ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ*

*Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15,*
*Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38:*

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.






Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Ե., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)

Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Հանձնված է արտադրության 16.09.1983 թ.: Ստորագրված է տպագրության 15.12.1983 թ.: ՎՖ 12391: Թուղթ օֆսեթ, 70×100¹/₁₆: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69562: Պատ. 2385: Գինը՝ 15 կ.:*

Сдано в набор 16.09. 1983 г. Подписано к печати 15.12. 1983 г. Формат $70\times100^{1}/_{16}$. ВФ 12391. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69562. Заказ 2385. Цена 15 коп.



ԱՆԱՏՈԼԻ ԳՐԻԳՈՐՅԱՆ— «ԱՇՆԱՆԱՅԻՆ ԱՐԵՎ»
«ՄԱՐԴԸ ԵՎ ՀՈՂԸ» ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻՑ

ԻՆԴԵՔՍ՝ 77806
ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.